ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 6 1962

ՍՈՒՐԵՆ ՔՈԼԱՆՋՅԱՆ

# ԳԵՌԼԱ ՀԱՅԱՔԱՂԱՔԸ ԵՎ ՆՐԱ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԺՈՂՈՎԱԾՈՒՆ*

*Գեռլա* (Gherla) *հայաքաղաքը գտնվում է Ռումինական ժողովրդական Հանրապետության նահանգներից Տրանսիլվանիայի կամ Արդեալի (հունգարերեն՝ Էրդել) Կլուժ գավառի Գեռլայի շրջանում:*

*Հունգարացի ժամանակագիրների վկայությամբ դեռևս հունգարացի իշխան Գեյզայի (972—997) և նրա որդի Ստեփան թագավորի (997—1038) ժամանակ, Տրանսիլվանիայում ապրում էին նաև հայեր: XIII դարում նույն վայրում հիշատակվում են «Հայկական հող» և «Հայկական վանք» անունները[2]: 1343 թ. Տրանսիլվանիայի Տիմաշ կոչված վայրում գործում էր Մարտին կամ Մարտիրոս անունով հայ եպիսկոպոս[3]: Հետագա դարերում Տրանսիլվանիայի մի շարք քաղաքներում հիշատակվում են հայ առևտրականներ: 1447 թ. Տրանսիլվանիայում հանդիպում ենք և մի հայի Թովմաս անունով, իբրև հոգևոր հովիվ Սարիգաճի Ս. Գևորգ վկայի եկեղեցու[4]:*

*Վերոհիշյալ փաստերը խոսում են այն մասին, որ դեռևս շատ վաղ ժամանակներում հայերը Տրանսիլվանիայում ամենայն հավանականությամբ ունեցել են կազմակերպված հայ գաղութ և թեմ:*

*Տրանսիլվանիայում հայերի վաղեմի ներկայությունը ապացուցող պերճախոս վկաներ են հանդիսանում նաև այդ նահանգում, ինչպես անցյալում, այնպես էլ մասամբ նաև ներկայումս դեռևս գոյություն ունեցող հայկական տեղանունների առկայությունը: Կան հայերին հիշեցնող թե գյուղերի, թե ավանների և թե շրջանային կենտրոնների անուններ[5]:*

*Հետագա դարերում ևս հատկապես Մոլդովայից եկող հայ գաղթականական նոր հոսանքները մեծացրել են Տրանսիլվանիայում ապրող հայերի թիվը և նոր թարմություն մտցրել գաղութի կյանքում: 1497 թ., երբ Լեհաստանի Ալբերտ թագավորը արշավեց Մոլդովայի վրա, այնտեղ ապրող հայերից 700 ընտանիք, պատերազմի և պաշարման արհավիրքներից փախչելով գաղթեցին*

---

* *Այս հոդվածի երկրորդ մասը՝ «Ցուցակ Գեռլայի հայերեն ձեռագրերի» խորագրով, լույս կընծայվի «Բանբեր Մատենադարանի» ժողովածուի հաջորդ համարում:*

1 Kézai: Chronice C. VIII. Thuroczi: Chronic. C. XII, p. 33. *Հմմտ. Ա. Փիփա, Հունգարիոյ և Դրանսիլուանիոյ ազգայինք, «Հանդէս Ամսօրեայ», 1899, էջ 49:*

2 Georgius Fejér, Codicis Diplomatici, Tom V, vol. III, p. 77. *Հմմտ. Ա. Փիփա, նույն, էջ 50:*

3 B. P. Hajdeu, Cuvinte den Batrani. t. II, p. 251. *Ղ. Ալիշան, Կամենից, տարեգիրք հայոց Լեհաստանի և Ռումենիոյ, Վենետիկ, 1896, էջ Ը:*

4 Chr. Lukácsi, Historia Armenorum Transilvaniae, Viennae, 1859, p. 10.

5 Vlad Banațeanu, Armenii in toponomia romineasca și toponomice rominești de origine armeana, „Studii și cercetari lingvistice", 1960, № 2, București, p. 201—216.

Հունգարիա, Տրանսիլվանիա և Գալիցիա[6]: 1551 թ. էլ, երբ Մոլդովայի իշխան Ստեֆան Ռարեշը, հայերին հունադավան դարձնելու նպատակով սկսեց հալածել նրանց, հայերի մի մասը ստիպված գաղթեց նաև Լեհաստան ու Տրանսիլվանիա[7]: XVII դարի առաջին կեսին Տրանսիլվանիայում հայերի գոյության մասին ուշագրավ փաստ է վերջերս մեր կողմից Մատենադարանում հայտնաբերված այն ձեռագիրը[8], որը գրված է 1647 թ. Տրանսիլվանիայի Վաշարհելյ քաղաքում, Խաչիկ Կաֆայեցու կողմից:

Վաշարհելյ անունով երկու հայաբնակ վայրեր են գոյություն ունեցել Տրանսիլվանիայում. առաջինը հայտնի է հունգարերեն Kézdivásárhely (Կեզդիվաշարհելյ, ներկայումս ռումիներեն՝ Tărgul Săcuiesc) և Marosvásárhely (Մարոշվաշարհելյ, ռումիներեն Tărgul Mureș). իբրև առևտրի խոշոր կենտրոն երկրորդն է եղել հայտնի, ուստի մենք կարծում ենք, որ տոնավաճառների ընթացքում արտագրված այդ ձեռագիրը պետք է, որ վերջին քաղաքի մեջ գրված լինի: Արժեքավոր են ձեռագրի հիշատակարանում գրի առած տեղեկությունները իրենց ձեռագրի օրինակ շնորհող խոճա Օհան Ճուղեցու (հմմ՝ Ջուղայեցի) մասին և որը այդ շրջանում նույն վայրում ապրող հայերից է եղել: Գրիչը տոնավաճառից տոնավաճառ մեծ փութկոտությամբ գրի է առել իր ձեռագիրը, նույն ժամանակ ներողություն խնդրելով այն բանի համար, որ ինքը այդ վայրում լավ թուղթ չի կարողացել ճարել:

Հայկական գաղթեր Մոլդովայից դեպի Տրանսիլվանիա տեղի ունեցան նաև ԺԷ դարում, որոնցից եթե առաջինը, 1654 թվականինը[9], մասնակի բնույթ էր կրում, ապա 1672 թ. գաղթը մեծ չափերի էր: Գ. Գովրիկյանը Մոլդովայից Տրանսիլվանիա գաղթող հայերի թիվը 3000 ընտանիք[10] է համարում, իհարկե առանց հաշվելու 1672 թվականից հետո նույն վայրում ապաստան գտած հայերին:

Անհրաժեշտ է նշել, որ 1672 թ. և հետագա տարիներին Մոլդովայից դեպի Տրանսիլվանիա կատարված գաղթականությունների վերաբերյալ գիտական գրականության մեջ գոյություն ունեցող իրարամերժ կարծիքները, մեր կարծիքով միակողմանի պետք է համարել: Մոլդովական, հայկական և այլազգի սկզբնաղբյուրների ուսումնասիրությունը մեզ բերեց այն եզրակացության, որ մի կողմից Մոլդովայի իշխան Դուկայի վարած հարկային ծանր քաղաքականությունը, մյուս կողմից նրա դեմ ծագած Հընկուլի շարժումը, ապա վերջինիս դեմ թուրքերից ուղարկված թաթարական ուժերի կատարած ավերածությունները և, ի վերջո, այս ծանր իրադրությունների ֆոնի վրա տեղի ունեցող հաջորդական լեհ-թուրքական պատերազմները, պատճառ էին եղել, որ 1670—1680-ական թվականներին ոչ միայն հայեր, այլև մոլդովացիներ գաղթեն Մոլդովայից դեպի հարևան երկրներ:

Սկզբնական շրջանում հայերը հեռանալով Մոլդովայից ապաստանել էին

---

6 Hurmuzaki, Documente... XV, p. 153—155.

7 Դեմետրիոս Դան, Արևելյան հայք ի Բուքովինա... Վիեննա, 1891, էջ 16 և Vlad Bănățeanu, Armenii in istoria și in viața romineasca, București, 1938, p. 37.

8 Մատենադարան, ձեռ. № 3519, էջ 358բ և 1ր:

9 Հովհ. Անեցի, Սերվիքի ու Ճուրճովի հայ գաղթականությունները. «Հանդէս Ամսօրեայ», 1896, էջ 133:

10 Գրիգոր Գովրիկյան, Դրանսիլուանիոյ հայոց մետրապոլիսը կամ Նիկոպոլիս Գերլա հայաքաղաքի ի գիր եւ ի պատկեր. Վիեննա, 1896, էջ 21:

Կարպատյան լեռներում, միշտ հույս ունենալով, որ Մոլդովայում խաղաղության հաստատվելուց հետո հնարավոր կլինի վերադառնալ իրենց տները, սակայն տեսնելով, որ այդ գործը մոտիկ ապագայում հնարավոր չի լինի իրագործել, ընդառաջելով Տրանսիլվանիայի իշխան Ապաֆիի հրավերին, հայերը սկսեցին հաստատվել Բիստրիցա Ջուրջով (Գեորգեն), Պաշպալով (Եղիսաբեթուպոլիս, ներկայումս՝ Դումբրըվեն), Սեպվիզ (Ֆրումոասա), Գեռլա, Գեորգեո, Չիք Շոմլեո, Գանդա, Պետելե և այլ վայրերում։ Մոլդովահայերը գաղթել էին իրենց թեմի առաջնորդ Մինաս եպիսկոպոս Զիլիֆտար Օղլուի գլխավորությամբ։ Պետք է նշել, սակայն, որ հայերը Տրանսիլվանիայում հաստատվելուց հետո իսկ, երկար տարիներ դեռևս չէին մոռանում Մոլդովական երկիրը և հույսեր էին փայփայում այնտեղ վերադառնալու մասին։ Մոլդովա վերադառնալու այդ միտքն է արտահայտում, օրինակ, վերոհիշյալ Մինաս եպիսկոպոսը, երբ Տրանսիլվանիայի հողում 1676 թ. շարադրած մի հիշատակարանում գրում էր. «Միթէ ատուած դարձի երկրին Պուղտանայ, որ խաղաղութիւն տայ թագաւորաց, զի մի օտարութեամբ մեռանիմք»[11]։ Անկասկած նույն վերադառնալու հույսն էր պատճառը, որ տակավին 1682 թ. Տրանսիլվանիայի Ջուրջով քաղաքում արտագրված մի ձեռագրի գրիչ իր հիշատակարանում հիշելով Տրանսիլվանիայի իշխանին, նրա կողքին դեռևս չէր մոռանում հիշատակել Մոլդովայի իշխանի անունը. այսպես «Եւ մաճարաց դաւին Աբրաֆի Միհային եւ Պողտանաց երկրին թագաւորին Տուգային...»[12]։ Մոլդովա վերադառնալու նրանց ցանկությունը ակներև է դառնում մի անգամ ևս, Տրանսիլվանիայի լատին եպիսկոպոսի տեղապահի կողմից, գաղթող հայերին Ջուրջովում և Ջուրում երկու մատուռներ հանձնելու կապակցությամբ կնքված պայմանագրում, որտեղ ի միջի այլոց ասված է. «...ամեն եկեղեցական կահկարասին և զգեստեղենները զորոնք անկից հետը պիտի տանան,—ի գիտութեան որ Դրանսիլվանիայէն նորեն Մոլդովա երթան (ընդգծումը մերն է—Ս. Ք.) հետերնին պիտի չտանին, հապա երկու մատուռներուն պարգև պիտի թողուն»[13]։ Մոլդովայում դեռևս շարունակում էին հայեր մնալ, սակայն Տրանսիլվանիա գաղթողներից քչերին միայն հաջողվեց ետ վերադառնալ։ Գաղթողները մեծ մասամբ շարունակեցին մնալ Տրանսիլվանիայում, հիմնադրելով հանրահայտ Եղիսաբեթուպոլիս և Գեռլա ծաղկյալ հայաքաղաքները։ Սկզբնական շրջանում հայերը ազատ են եղել պահպանելու իրենց դավանությունը և հայրենական սովորությունները։ Սակայն շատ շուտով, բանի կաթոլիկացած լեհահայ թեմի առաջնորդ Վարդան Հունանյանը, որ հաջորդել էր տխրահռչակ Նիկոլ Թորոսովիչին, և որը ուշի ուշով հետևում էր մոլդովահայերի մի մասի Տրանսիլվանիա գաղթելուն, չլսված տեսնելով նրանց միաբանականությունը, կաթոլիկական քարոզչության սերմերը մի կողմից ուղղել էր Տրանսիլվանիա, իսկ մյուս կողմից Մոլդովա։ Պարզ է, որ կաթոլիկական քարոզչությունը նպաստավոր հող ուներ Տրանսիլվանիայում. Ավստրիայի Լեոպոլդ կայսրը, ինչպես նշում է Գովրիկյանը, «շատ աշխատեցավ, որ հայերը, որ Մինաս եպիսկոպոսին առաջնորդությամբ Դրանսիլվանիա եկած էին Հռոմա դաւանին հետ

11 Ղ. Ալիշան, Կամենից..., էջ 197։

12 Հակ. վ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, Վիեննա, էջ 982։

13 Գր. վ. Գովրիկյան, Հայք Յեղիսաբեթուպոլիս Դրանսիլուանիոյ (1780—1825), հատոր Բ, էջ 154։

միսիոնար[14]: Գտնվեց հարմար մի քարոզիչ, ինչպիսին էր բնիկ բոտոշանցի Օքսենտ (Ավքսենտիոս) Վրդապետը, որը Հռոմի Ուրբանյան վարժարանում կրթվելուց հետո ուղարկվեց Տրանսիլվանիա հայերին կաթոլիկացնելու համար: Պարզ է, որ նա ծագումով մոլդովահայ լինելով շատ ավելի հեշտ կկարողանար լեզու գտնել գաղթողների հետ: Ի վերջո Տրանսիլվանիայում ապաստան գտած հայերը կաթոլիկացվեցին, սակայն այդ հեշտ տեղի չունեցավ, ինչպես ոմանք կարծում են: Նրանք երկար ու համառ պայքար մղեցին կաթոլիկ քարոզչության դեմ, համառորեն աշխատեցին պահպանել հայ ծեսը, հայկական տոմարը, հայկական հնագույն ավանդույթները: Ինչ վերաբերում է Մոլդովայում դեռևս մնացած հայերին կաթոլիկության մղելու գործին, պետք է նշել, որ ինչպես այս, այնպես էլ նախորդ և հետագա բոլոր փորձերը վերջացել են կաթոլիկական քարոզչության համար բացարձակ անհաջողությամբ:

1700 թվականին Օքսենտ Վրդապետը, Լեոպոլդ կայսրից հրաման ստանալով, լծվեց Գեռլա կոչված գյուղի մոտ հայաքաղաքի կառուցման գործին: Հայաքաղաքի գեղեցիկ հատակագիծը պատրաստեց Հռոմից հրավիրված Ալեքսա անունով հայ ճարտարապետը: Մեծ մասամբ Բիստրիցայի հայերն էին, որ հաստատվեցին Գեռլայում, կային նաև Չուրչովից, Սերմեդից, Ֆիֆալուից, Գեորգենիից, Պետելեից, Բառոշից և Վիցիից եկող հայեր[15]:

Ինչպես տեսանք, Գեռլայի հայերը մեծ մասամբ Մոլդովայից էին գաղթել, այնտեղ ապրող հայերի ազգանունների մեջ դեռևս 1930 թվականին[16] պահպանվում էին Մոլդովան և նրա հայաշատ քաղաքները հիշեցնող ազգանուններ, ինչպես Մոլդովան, Բոտոշանցի, Ուրմանցի (—Ռոմանցի) և այլն, ինչպես նաև ռումիներեն բառերից կազմված ազգանուններ՝ Նեգրուց, Գոլրիկ, Պլաչինտար, Ռոման, Ռոշկա, Վերզար և այլն: Գեռլայում կան նաև Լեհաստանի հայ գաղութը հիշեցնող ազգանուններ, ինչպես՝ Լենգել (լեհացի), Կամենցի և այլն:

Ինչպես երևում է պեղումներով հայտնաբերված նյութերից, հնում Գեռլայի հյուսիսային մասում ապրել է հռոմեական մի գաղթականություն: Դարձյալ քաղաքի հյուսիսում է գտնվում Մարտինուցի կարդինալի 1540 թ. կառուցած դղյակը, որը օգտագործվել է որպես բանտ. ահա այդ դղյակն է, որ ռումիներեն անվանվել է Գեռլա: Հայերը այդ նորակառույց քաղաքը կոչել են Հայաքաղաք: Հաճախ այդպես ենք գտնում գրված այնտեղ ընդօրինակված ձեռագրերի մեջ: Լատինները Գեռլային կոչել են Armenopolis, գերմանները՝ Armenierstadt, իսկ հունգարները՝ Örményvaros: Գեռլայի հունգարական պաշտոնական անունն է եղել Szamosújvár—Սամոշույվար, այսինքն՝ Սամոշ (ռումինները Սոմեշ) գետի վրա նոր բերդաքաղաք: Արևմտահայ ուղղագրությամբ Գեռլան գրվել է Կերլա, երբեմն նաև Կեռլե ձևերով:

XIX դարի 70-ական թվականներին, ինչպես նկարագրում է ուղևոր Արշակ Մ. Ալթունյանը, Օրոյտո կայարանից մինչև Գեռլա տանող խճուղու երկու կողմերում կային մեծ թվով քարից կամ փայտից կառուցված բնական մեծությամբ

---

14 Գրիգոր վ. Գովրիկյան, Տրանսիլվանիայի հայոց մետրոպոլիսը..., էջ 18:
15 Նույն տեղում, էջ 10—11:
16 Բացված 1930 թ. հոկտեմբերի 19-ին Գեռլայում կատարվելիք հայկական հանդիսության վերաբերյալ հունգարերեն մի հրավիրագրից, որը տպագրվել է Գեռլայում:

արձաններ, խաչեր և այլն. կար նաև Գրիգոր Լուսավորչի կողմից Տրդատի մկրտության պատկերը և այլն[17]։

Տրանսիլվանիայի Ապաֆի I իշխանը արտոնություններ տվեց հայերին։ Զանազան առանձնաշնորհումներ տվեցին քաղաքին նաև Ապաֆի II, Լեոպոլդ, Մարիա Թերեզա, Ֆրանց Ֆերդինանդ և այլ կայսրերը։ Գհեռլան 1714 թվականին ունեցավ իր քաղաքային խորհրդարանը, առաջին դատավոր-քաղաքագլուխը, 12 ծերերի խորհուրդը և 40 դատավորների խորհուրդը, որը կոչվում էր Սուդա։ Նրանք ևս ստանում են Եղիսաբեթուպոլիս հայաքաղաքի նման իրավունք իրենց հպատակներին մահապատժի ենթարկելու, սակայն նրա գործադրությունը հետագայում կախված էր Տրանսիլվանիայի Գերագույն ատյանից, որը այդ ժամանակ Կլուժում էր գտնվում[18]։

Գհեռլան ստանում է կայսերական ազատ քաղաքի իրավունք։ Օտարները միայն հատուկ արտոնությամբ կարող էին քաղաք մուտք գործել։ Հայաքաղաքի հողը հայերն էին գնել պետությունից և մաս առ մաս վճարելով, ավարտել էին իրենց պարտքը միայն 1758 թ., Մարիա Թերեզա կայսրուհու օրոք։

Գհեռլայում նշանավոր է եղել «Մաշկագործաց եղբայրությունը». նրանց կանոնադրությունը հաստատել էր 1700 թ. Վրգարյանը։ Նրանք հռչակված էին այծի նուրբ կաշի պատրաստելու և ներկելու գործում։ Պատրաստման գաղտնիքը այդ շրջանում միայն հայերը գիտեին և այն իրենց հետ էին բերել Մոլդովայից։ Ունեին 4 գործարաններ։ Միայն Տրանսիլվանիայում տարեկան վաճառում էին 30.000 կտոր, իսկ Հունգարիայում 20.000 կտոր կաշի։

1718 թվականից առաջ էր հիմնված նաև գհեռլահայ վաճառականաց եղբայրությունը, որը աշխույժ առևտուր էր ծավալում։ Նրանք հատկապես զբաղվում էին անասնավաճառությամբ։ Եզներ էին արածացնում և գիրացնում և ապա տանում ու վաճառում էին հեռավոր երկրներում։ Գհեռլայի վաճառականները հասնում էին մինչև Գերմանիա և Իտալիա։ Նրանք տարեկան վաճառում էին 100.000 տավարից ավելի։ Հայտնի է, որ դեռևս XIV դարի վերջից և XV դարի սկզբից լեհահայերը և մոլդովահայերը նույնպես առևտրով էին զբաղվում Մոլդովայում։ Ավելի քիչ թիվ էին կազմում արհեստավորները։ Կային դերձակներ, կարվակներ (կոշկակարներ), խաղախորդներ (կաշեգործներ), մուշտակակարներ և այլն[19]։

Պարզ է, որ քաղաքական դեպքերի հետևանքով գրեթե քայքայման եզրին հասած Տրանսիլվանիայի համար կարևոր նշանակություն էր ունեցել մանրագետ արհեստավորներով և առևտրականներով հայտնի եղող հայ գաղթականների ներկայությունը երկրում, քանի որ հայերը միջազգային ճանապարհների վրա արդեն վաղուց համբավ էին ձեռք բերել, իսկ մյուս կողմից էլ Մոլդովայում բնիկ ազգի հետ մասնակցել էին քաղաքների հիմնադրման և հետագա ծաղկման աշխատանքներին։ Այդ պատճառով էլ, ինչպես նշում է ֆրանսիացի հայագետ Ֆ. Մակլերը, Գհեռլան դարձավ հունգարական պետության ամենա-

---

17 Արշակ Մ. Այթունյան, Տեղեկագրութիւն Հայոց գաղթականութեան որք ի Մոլտո-Վալաքիա, Հունգարիա եւ ի Լեհաստան, Ցոկշան, 1877, էջ 181։

18 Ստ. Ագոնց, Աշխարհագրութիւն ի չորից մասանց աշխարհի, 1812, հտ. Դ, Վենետիկ, էջ 328։

19 Ստ. Ագոնց, Աշխարհագրութիւն..., էջ 328։

առաջնակարգ առևտրի և ինդուստրիայի կենտրոններից մեկը[20]: Ռումինացի հայագետ Վլադ Բընըցեանուի կարծիքով, Գեռլան Արմենոպոլը և ռումինական երկրների հետ կատարած առևտրով նպաստեց Տրանսիլվանիայի բարգավաճմանը[21]:

Նշանավոր էր քաղաքի կարիճների (պատանիների) եղբայրությունը, որը համարյա նույն ձևով շարունակում էր իր գործունեությունը, նման Լեհաստանում և Մոլդովայում գործող կարիճների: Այն 1729 թ. վերակազմվելով ստացավ «Եղբայրութիւն ամենասուրբ երրորդութեան» անունը: Գեռլայում կային նաև երեք հոգևոր եղբայրություններ, որոնցից առաջինը կոչվում էր «Սրբոց Յովակիմայ և Աննայի», որին անդամակցում էին Հայաքաղաքի տանտիկինները: Երկրորդ եղբայրությունը հայտնի էր «Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին» անունով և միավորում էր Հայաքաղաքի տանտերերին: Եվ վերջապես երրորդը՝ «Ամենասուրբ անուանն Յիսուսի» տղամարդկանց եղբայրությունը: Այս վերջին եղբայրության ցարդ անտիպ մնացած կանոնադրությունը մեզ հաջողվեց հայտնաբերել 1948 թ. Գեռլայում: Վերոհիշյալ բոլոր եղբայրությունները դեռ վաղուց գոյություն են ունեցել Գեռլայում, սակայն 1729 թ. հայտնի մատենագիր Ստեփանոս Ռոշքայի այցելության շրջանում նա վերստին հաստատել և յուրաքանչյուրի համար հորինել է առանձին կանոնադրություն:

1715 թվականին Օքսենտ Վրզարյանը մահացավ: Նա Տրանսիլվանիայի հայոց եպիսկոպոսական աթոռը կտակել էր վերոհիշյալ կամենացի Ստեփանոս Ռոշքային. սակայն քաղաքի մեծամեծները իրենց համաձայնությունը չեն տալիս և Ռոշքան մնում է միայն իբրև այցարար: Մարիա Թերեզա կայսրուհին հայոց եպիսկոպոս է առաջադրում Մինաս Թորոսյանին, սակայն քաղաքի որոշ մեծամեծներ այդ թեկնածությանը ևս չեն համաձայնում: Ի վերջո միջամտում են լատին հոգևորականները, սակայն նրանց մուտքը հայոց եկեղեցի արգելվում է գեռլացի հայ կանանց կողմից, որոնք փորձում են նույնիսկ նրանց քարկոծել և բացականչում են ռումիներեն «Մեզ պետք չէ լատին արարողություն» (Nu trebuie la noi saecula saeculorum): Ռումիներեն էին բացականչել Մոլդովայից գաղթած հայ տիկինները, այն պատճառով, որ լատին քահանաները հայերեն չգիտեին. իսկ իրենք էլ հունգարերենին դեռևս անտեղյակ էին[22]: Ճիզվիտների միջնորդությունների հետևանքով, հայ եպիսկոպոսի ընտրությունը տեղի չի ունենում և Տրանսիլվանիայի հայոց եկեղեցիները ժամանակավորապես անցնում են Տրանսիլվանիայի լատին եպիսկոպոսության իրավասության տակ: Այդ «ժամանակավոր» կոչված շրջանը տևում է ավելի քան 200 տարի: Հայերի բոլոր դիմումները Վատիկան Տրանսիլվանիայում հայ կաթոլիկ առաջնորդություն վերականգնելու խնդրանքով անպատասխան են մնում: Սակայն հակառակ բոլոր խոչընդոտներին, շուրջ երկու հարյուր տարի շարունակ Հայաքաղաքը կարողանում է լավագույն կերպով պահպանել իր հայկական կյանքը: Ահա այդ կյանքը նկատի ունենալով է, որ գեռլացի մատենագիր Զաքարիա Կապրուշյանը իր «Կատարեալ է...» անտիպ պատմական ծավալուն պոեմում գրում է.

[20] Frédéric Macler, Rapport sur une mission scientifique en Roumanie (Juin—Août 1927), Rev. Et. Arm. Tome X, fasc. 1. Paris, 1930, p. 7.

[21] Vlad Banațeanu, Armenii în istoria..., p. 38.

[22] Գր. Գովրիկյան, Տրանսիլուանիոյ հայոց մետրապոլիսը..., էջ 97:

Իրավի Հայաքաղաք էր
Ի՞նչ ասիմ, նոր Հայաստան էր[23]:

Նույնպես Գեռլա քաղաքին նվիրված երգերից մեկում Հայաքաղաքից հեռացող հայը իրեն համարում էր հեռացած նաև ընդհանրապես հայոց ազգից.

Չէ ես մոտէց հէռու կերթամ
Հայոց ազգէ կու հեռենամ[24]:

1675 թ. Գեռլա գաղթող առաջին հայերը կառուցում են «գերանաշեն» (փայտաշեն) մի եկեղեցի ճիշտ այն տեղում, ուր այժմ գտնվում է Հայաքաղաքի փառավոր մայր տաճարը: Այդ շրջանում հայերը դեռևս կաթոլիկացված չէին:

1724 թ. Սիմայան եղբայրները կառուցում են Ավետման կամ Սողոմոնյան եկեղեցին, որը բավական չլինելով Գեռլայի ստվար հայ բնակչության, քաղաքի կենտրոնական գլխավոր հրապարակի վրա ձեռնարկում են կառուցել Ս. Երրորդություն հոյակապ մայր տաճարը: 1748 թ. է սկսվում տաճարի շինությունը և ավարտվում է հազիվ նույն դարի վերջին: Այն ամենամեծն ու ամենափառավորն է Ռումինիայում գտնվող բոլոր հայկական տաճարներից և իր ծավալով ամենախոշորներից մեկը բովանդակ Ռումինիայում: Ըստ Գեռլա քաղաքի պատմության հեղինակ գեռլացի Գր. Գովրիկյանի, Գեռլայի մայր տաճարի երկայնությունն է 58 մետր, ներքին լայնությունը 22 մետր 80 սանտիմետր, պատերի հաստությունը 1,25 մ., իսկ տաճարի բարձրությունն է աշտարակով հանդերձ 51 մետր 18 սանտիմետր[25]: Հայերը կառուցել են նաև երկու մատուռներ, որոնցից մեկը հին է և գտնվում է հայոց գերեզմանոցում, իսկ մյուսը կառուցվել է 1885—1894 թթ.: Հայերը Հայաքաղաքում կառուցել են նաև մի գեղեցիկ եկեղեցի և նվիրել են հունգարացիներին: Հայերեն արձանագրություններ են գտնվում ոչ միայն վերոհիշյալ հուշարձաններից մեծ մասի, այլ նաև հայերի կողմից կառուցված բնակելի շենքերի վրա: Մինչև օրս էլ բազմաթիվ տների ճակատին երևում են ավստրիական կայսրության կողմից ազնվականություն ստացած հայկական մի շարք գերդաստանների տոհմանշանները:

Հայաքաղաքը ունեցել է նաև իր կնիքը և զինանշանը, որը հայկական երկգլխանի արծիվն է եղել:

Տրանսիլվանիայի հայերի մոտ սովորություն է եղել իրենց կառուցած հուշարձանների զանազան մասերում, գնդիկների մեջ պահպանել ձեռագիր հիշատակագրություններ ժամանակագրական կառուցումների հետ կապված: Այդպես է եղել նաև Գեռլայում: Խորհրդանոցի շենքը կառուցվել է քաղաքի հիմնադրումից անմիջապես հետո. նրա գագաթին դրված մի սափորի մեջ զետեղել են բազմաթիվ հիշատակագրություններ, սակայն 1893 թվականին, շենքը քանդելու ժամանակ, այդ հիշատակագրություններից ոչինչ դուրս չի եկել բացի թղթի աննշան կտորտանքներից[26]:

Հայաքաղաքի ժողովուրդը ստեղծել է բազմաթիվ առածներ, ասակներ, պատմվածքներ, երգեր և պարեր, որոնցից առանձնապես ուշագրավ է «Պար Կեռլա քաղաքին» երգը: Ահա մի նմուշ.

23 Գեռլայի շրջանային թանգարանի հայերեն ձեռագիր N 73 (ըստ մեր ցուցակի):
24 Գր. Գովրիկյան, Տրանսիլվանիոյ հայոց մետրապոլիսը..., էջ 307:
25 Նույն տեղում, էջ 104—105:
26 Նույն տեղում, էջ 186—187

Հայոց քաղաք դուն մեծ Կերլա
Արանձ ինծի հիմցի մընայ
Չէ ես մօտէդ հէրու կերթամ
Հայոց ազգէ կու հերենամ:
. . . . . . . . .
Թէ օր ան ալ դուն ինծ տախս
Հայոց ժամէր թէ դուն ունիս
Դատաւորաք, ազէկ հայեր.
Խօճոյ պանով պաղըրկըններ:

Չուր ինծի պատնք կասիս,
Պարապ կըլաճըրատան կանիս
Չէ ես գըրամէ կի բաժնըվիմ.
Էկօյ նըմա որ համբուրիմ:
. . . . . . . . .

Ծարանակության մեջ բաժանվողը ողբում է Գեռլայի անկումը. բնակիչներից շատերի քաղաքից հեռանալը, հայկական տների օտարանալը: Պարերգի վերջում, քաղաքից հեռացողը հայտնում է այն միտքը, որ իր պանդխտության բուն պատճառը քաղաքի լրիվ անկումը չտեսնելու իր ցանկությունն է եղել.

Կերլայ քաղաք ողորմելի,
Մարգիրմօցվով վազվըռելի.
Թող գիս մօտէդ որ հերենամ
Օտար երկիր, օր ես հոլնամ[27]:

Պահպանվել է նույնիսկ Գեռլայի գիշերապահի գիշերային ժամը ծանուցող երգը. «Աղօթք արեցէք, ըզԱստուած խնդրեցէք, ըզՏիրամայր Սուրբ Աստուածածինը բարեխօս բըրնեցէք, զկրակը աղէկ թաղեցէք ըզճիրախը անցուցէք. վէ սըհաթը ինն է»[28]: 1850 թվականից հետո գիշերային ժամը Գեռլայում ծանուցվել է զանգի միջոցով, իսկ հետո սրինգ նվագելով, մինչև որ այս սովորությունը ևս լրիվ անհետացել է:

Ապահովաբար պետք է կարծել, որ XVIII դարի վերջում Գեռլայի հայերը ևս ունեցել են հայկական թատրոն, քանի որ այդ ժամանակաշրջանում Տրանսիլվանիայի երկու հայաշատ կենտրոններում արդեն իսկ գոյություն ուներ դպրոցական թատրոն: Համենայն դեպս, նորահայտ նյութերի հիման վրա վճռականապես կարելի է ասել, որ Գեռլայում, արդեն XIX դարի 20-ական թվականներին, շնորհիվ գեռլացի հասարակական գործիչ ու մանկավարժ Զաքարիա Կապրոշյանի ջանքերի, նրա աշակերտները ներկայացնում էին մի շարք թատերգություններ:

Տրանսիլվանիայի հայերի բարբառը ավելի նման է Նոր Նախիջևանի (Ղրիմի) բարբառին: Գեռլայի և Տրանսիլվանիայի մյուս հայաշատ կենտրոններից մեծ թվով գրավոր հուշարձաններ են մեզ ավանդ մնացել. դրանք բացի պատմական արժեքից մեծ նշանակություն ունեն նաև տեղի հայերի այժմ անհետացած բարբառը ուսումնասիրելու համար: Ճիշտ է թե մեծանուն լեզվա-

27 Գր. Գովրիկյան, Դրանսիլվանիոյ հայոց..., էջ 307, 308, 311:
28 Նույն տեղում, էջ 180

բան Հր. Աճառյանը իր «Քննություն Անտիոքի բարբառի»[29] գործում լեհահայ, ռումինահայ (նաև սուչավահայ) բարբառների շարքին ուսումնասիրել է նաև Տրանսիլվանիայի հայոց բարբառը. սակայն պետք է նշել, որ մեծանուն գիտնականը դժբախտաբար իր ձեռքի տակ ունեցել է սակավաթիվ աղբյուրներ, այն էլ միայն տպագիր: Այժմ Ռումինիայի զանազան քաղաքների մատենադարաններում և արխիվներում պահվող ու Տրանսիլվանահայ գաղութի անցյալին վերաբերող հարուստ նյութերը կարող են անհամեմատելիորեն առատ նյութ տալ պատմաբանին ու լեզվաբանին:

Գեռլայի և Տրանսիլվանիայի հայերը կարևոր դեր են խաղացել նաև երկրի քաղաքական և մշակութային կյանքում: Մեծ է թիվը այն հայերի, որոնք Հունգարիայի պետական կյանքում ամենաբարձր աստիճանների են հասել: Տրանսիլվանահայ գաղութը շատ հանդուգն զինվորականներ է տվել. գեռլացիները ավստրիական բանակին տվել են ձիավորներ և հետևակայիններ 1808 թ. Նապոլեոնի դեմ մղված մարտերի ժամանակ: 1848—1849 թթ. հունգարական ռևոլյուցիայի ժամանակ գործոն մասնակցություն են ունեցել նաև Տրանսիլվանիայի հայաշատ քաղաքների հայերը: Այս կապակցությամբ բավական է միայն նշել, որ հունգարական ռևոլյուցիան ղեկավարող զորավարներից երեքը Տրանսիլվանիայի հայեր էին՝ Քիշ (Քիշյան) Էռնեո, Լազար (Լազարյան) Վիլմոշը և Ցեց (Ցեցյան) Հովհաննեսը: Երբ ռևոլյուցիան արյան մեջ ճնշվեց, նրա առաջնորդ զորավարների շարքում գնդակահարվեցին նաև վերոհիշյալ երկու հայազգի զորավարները. միայն Ցեցյան Հովհաննեսին հաջողվեց պատվով կռվելուց հետո անցնել հեռավոր Բուենոս Այրես, ուր մեռավ 1904 թ. իր ծննդավայրի կարոտը սրտում[30]: Հովհաննես Ցեցյանը Արգենտինայի (Բուենոս Այրես) զինվորական դպրոցի հիմնադիրը ու առաջին հրամանատարը եղավ[31]: Ինչպես նշում են հունգարացիները 1848—49 թթ. ռևոլյուցիային Տրանսիլվանիայի հայերը տվեցին հերոսներ, բայց ուրացող՝ ոչ մեկը:

Գեռլայի հայերը իրենց նոր հայրենիքին տվեցին նաև բարձրաստիճան դեմքեր, քաղաքական և մշակութային կարկառուն գործիչներ, հայագետներ և այլն: Գեռլացի Դանիելյան հայկական ընտանիքից էր սերվել Եննեո Դանիելյանը (1843—1923), որը դարձավ Հունգարիայի առևտրի մինիստր: Միքայել (Մինաս) Մաքիյանը (1799—1858) հանդիսացավ հունգարական ճարտարապետական ակադեմիայի ականավոր դեմքերից և երկրի ամենահայտնի ռազմագետ շինարարը: Հունգարիայի արդյունաբերական խորհրդականի պաշտոնն է գրավել Գրիգոր Սիմայանը (1823—1907), որը մասնակցել է 1848—49 թթ. հունգարական ռևոլյուցիային, եղել է Գեռլայի քաղաքապետ, Հայաքաղաքի պատգամավոր և ջերմ հայրենասեր անձնավորություն: Հունգարիայի համարակալության պաշտոնատան ղեկավարը հանդիսացավ գեռլացի Սողոմոն Կաղատոգյանը (1830—1902):

Հունգարական գրականության մեջ կարևոր դեր են կատարել գեռլացի հայազգի գրողներ՝ Կորնել Լալոն (1780—1839), դոկտ. Բանյա Էլեմերը (1873—1915), Տեոդոս Տիվադարը (1854—1895): Դոկտ. Գողչա Լալոն

---

29 Հր. Աճառյան, Քննություն Անտիոքի բարբառի, Երևան, 1953:

30 Հ. Մ. Գոասրյան, Տրանսիլվանիո հայերուն անցյալեն, «Նոր կյանք», Բուխարեստ, 1958, № 25 (417):

31 Դոկտ. Զելիրա Աղճարիք, Հայերը Հունգարիո մէջ. «Բազմավէպ», Վենետիկ, 1947, էջ 236:

(1865—1933) Հունգարիայի դավանության և գիտության մինիստրության ղեկավարներից մեկն է եղել։ Հայտնի բժշկապետ էր Ստեփանոս Մալիչյանը (1830—1908)։ Անտոն Մոլնարյանը (1847—1902) մի շարք հունգարական թերթերի խմբագրապետ, Բուդապեշտի համալսարանի դասախոս և պատմաբան է եղել. նա թողել է նաև բազմաթիվ հայագիտական աշխատություններ։ Տրանսիլվանիայի հայերի պատմության առաջին հեղինակը հանդիսացել Խաչիկ Լուքաչյանը (1804—1876), որը թողել է նաև մի քանի գիտական այլ գործեր։ Նա համառ կերպով պայքարեց Տրանսիլվանիայի հայոց ինքնուրույն ազգային եկեղեցությունը վերահաստատելու և լատին կղերի գերիշխանությունից դուրս գալու համար։ Լուքաչյանը իր խնայած դրամով Հայաքաղաքի աղջիկների որբանոցի հիմքը դրեց։ Բացառիկ հայրենասեր գործիչներից էր Խաչիկ Սոնկոտյանը (1843—1907)։ Նա եղել է վաստակավոր մանկավարժ, «Armenia» հունգարերեն հայագիտական հանդեսի անխոնջ հիմնադիրն ու հրատարակիչը, նախաձեռնողներից մեկը Գեռլայի հայկական թանգարանի։ Սոնկոտյանը հեղինակ է հայագիտական բազմաթիվ մենագրությունների, որոնցից հիշատակենք Գեռլա Հայաքաղաքի երեք հատորանոց պատմությունը, Տրանսիլվանիայի գերդաստանների տոհմագրության բառարանը, Մովսես Խորենացու հայոց պատմության թարգմանությունը և այլ գործեր, բոլորն էլ հրատարակված հունգարերեն լեզվով։ Հայաքաղաքի ամենահայտնի մանկավարժն էր վարդապետ Զաքար՝ Զաքարիա Կապրուշյանը (1794—1870). սա եղել է գիտնական, բանաստեղծ, երգիծաբան, թատերագիր, բառարանագիր, նկարիչ և այլն։ Այսօր էլ Գեռլայի թանգարանում մնացող և իր գրչին պատկանող մի քանի տասնյակ ստվար ձեռագիր հայերեն աշխատությունները ցույց են տալիս նրա բազմակողմանի տաղանդը և ցուցաբերած սերը դեպի Հայաքաղաքն ու նրա ժողովուրդը։ Գեռլացի Գրիգոր Ցեցյանը (1822—1889) 40 տարի շարունակ Հայաքաղաքի հայոց դպրոցում մանկավարժ է եղել, իր խնայած դրամով սատարել է նաև Հայաքաղաքի որբանոցի բացմանը։ Վիեննայի Մխիթարյան միաբանության ընդհ. աբբահայր են դարձել երկու գեռլացիներ։ Դրանցից առաջինը՝ դոկտ. Վարդան Ասկարյանն է (1843—1886), որը հեղինակ է նաև մի քանի աշխատությունների, իսկ երկրորդը՝ Գրիգոր Գովրիկյանը (1841—1931), որի բազմաթիվ գործերի մեջ, հատկապես մեծ արժեք են ներկայացնում Տրանսիլվանիայի հայերի պատմությանը նվիրված ստվար աշխատությունները[32]։ Գեռլացի էր նաև Բարսեղ Լաուրվյանը (1735—1809)՝ Վենետիկի Մխիթարյան միաբանության անդամ և հեղինակ մի քանի երկասիրությունների[33] և շատ ուրիշներ։

Հայրենասիրական ոգին Գեռլայի հայերի մոտ դեռ շատ վառ էր նաև XIX դարի վերջին և XX դարի սկզբին։ 1880 թ. Հայաստանում ծայր առած սովի հետևանքով, երբ Տրանսիլվանիայում էլ հանգանակություն սկսվեց, դրան ինչպես միշտ, գլխավորում էին Գեռլայի հայերը[34]։ Թուրքիայում հայաջինջ ջարդերի ժամանակ և թրքահայ գաղթականության շրջանում, Գեռլայի հայերը

[32] Վերոհիշյալ նշանավոր կենսագրությունների շարադրման համար օգտագործել ենք Dr. Hovhannesian Eghia-ի Hazai örmények a nemzet szolgálatában, Gödöllő, 1940. և Փիփասի (Իմա Գովրիկյանի) «Հանդէս Ամսօրեայ»-ում տպած մի շարք հոդվածները։

[33] Բարսեղ Սարգիսյան, Երկհարիւրամեայ գրականական գործունէութիւն և նշանաւոր գործիչներ Վենետկոյ Մխիթարեան միաբանութեան, Վենետիկ, 1905, էջ 158 և 218։

[34] «Մասիս», Կ. Պոլիս, 1880, № 2702 և 2704։

մեծ սիրով նյութական և բարոյական օժանդակություն ցույց տվեցին իրենց դժբախտ ազգակիցներին։

Գեռլայի հայերին մեծ պատիվ բերող գործերից է 1887 թ. «Armenia» հունգարերեն հայագիտական հանդեսի հրատարակությունը։ Հանդեսը շուրջ 21 տարի անխափան հրատարակվելուց հետո դադարեց 1907 թ. խմբագիր Խաչիկ Սոնկոտյանի մահվանից քիչ հետո։ 1912 թ. բանասեր Մ. Պոտուրյանը փորձեց վերահրատարակել «Armenia»-ն, սակայն մեկ համար միայն լույս տեսավ։

Հայաքաղաքի մշակութային կյանքի նշանակալից երևույթներից էր նաև հայկական թանգարանի ստեղծումը, որի նախաձեռնողը հանդիսացավ հունգարացի հայասեր և հայագետ դոկտ. Անտալ Հերմանը։ Թանգարանի գլխավոր հիմնադիրները էին, բացի Անտալ Հերմանից (որը և նրա առաջին պատվավոր վերատեսուչը հանդիսացավ), նաև հայազգի գիտնականներ Խաչիկ Սոնկոտյանը, Հ. Մերզայանը, Գրիգոր Գովրիկյանը, դոկտ. Պապագ Գուստավը, որոնք բոլորն էլ իրենց անձնական նվերներով հարստացրին թանգարանը։ Գիտնական Սոնկոտյանը իր տան ամբողջ ժողովածուները, ձեռագրերն ու հարուստ գրադարանը, պահարաններով միասին, նվիրեց թանգարանին։ Սոնկոտյանի մահից հետո թանգարանի մեծ սրահը վերանվանվեց և ստացավ Սոնկոտյան սրահ անունը։ Թանգարանի պաշտոնական բացումը տեղի ունեցավ 1909 թ. սեպտեմբերի 19-ին։

Թանգարանն ուներ է երեք բաժին. ա) Մատենադարան և դիվանատուն, բ) Հնություններ և ազգագրական նյութեր, գ) Արվեստի վերաբերյալ նյութեր։ Ստեղծված էր նաև «Հայկական թանգարանի ընկերություն», որը նպատակ ուներ շուտով սկսել քաղաքի մերձակայքում գտնվող հռոմեական բնակավայրերի գիտական պեղման աշխատանքները։ «Armenia»-ն ընկերության օրգանն էր, որին իբր հավելված երբեմն պիտի հրատարակվեր նաև «Թանգարանի Տեղեկատու» հայերեն և արևմտյան լեզուներով[35]։

Թանգարանի ղեկավարության և ի մասնավորի Սոնկոտյանի մտադրությունն է եղել կազմակերպել 10—15 հոգուց բաղկացած մի գիտական արշավախումբ և ուղևորվել Հայաստան և հատկապես իրենց նախահայրենիքը համարվող Անի քաղաքը և հնություններ հավաքել այս նորաստեղծ թանգարանի համար։ Թերթերը արդեն հաղորդել էին, որ շուտով արշավախումբը ճանապարհ է ընկնելու Հայաքաղաքից դեպի Հայաստան, սակայն նրա նախաձեռնողի՝ Սոնկոտյանի վաղաժամ մահը վերջ տվեց այդ ծրագրին[36]։

1927 թ. Գեռլայի հայոց թանգարանը բացի գրչագրերից, ձեռագործներից, Հայաքաղաքին արված կայսերական հրովարտակներից, դրամներից և այլն ուներ նաև 2000 հատոր մասնագիտական գրքեր՝ հունգարերեն, գերմաներեն, լատիներեն և հայերեն լեզուներով[37]։ Այդ գրքերի թիվը ավելի ուշ բարձրացել էր 3000-ի։ Վերջին պատերազմի ընթացքում թանգարանը մեծ վնաս կրեց։ 1948 թ. թանգարանի որոշ մնացորդներ գտնվում էին Հայ աղջիկների որբանոցում, իսկ մի մասն էլ Ս. Երրորդության մայր տաճարի վերնահարկում։ Ահա

[35] Հովհաննես Անեցի, Սամոշույվար հայաքաղաքին «Հայկական թանգարանին» անցեալն ու ներկան, «Հանդէս Ամսօրեայ», 1908 թ., էջ 29—32։

[36] Տե՛ս J. Merza-ի հոդվածը „Ararat", 1926, Bucureşti, № 26 և «Յուսաբեր», 1913, № 152, 25/10, Կահիրե։

[37] Frédéric Macler, Rapport... en Roumanie..., p. 10—11.

այս նյութերի հիման վրա Գեռլայում մի քանի տարի առաջ բացվեց Գեռլայի շրջանային թանգարանը։

Մեր դարի 20-ական թվականներին Թուրքիայից փոքր թվով հայ գաղթականներ եկան նաև Գեռլա։ Նրանք 1927 թվականին հիմնեցին «Դանիել Վարուժան» անունով ընթերցարանը[38] և «Գեռլայի ձայն» խմորատիպ հայերեն թերթը, սակայն հին ու նոր հայերի միջև հնարավոր չեղավ սերտ կապ ստեղծել։

Ավելի քան 200 տարի Տրանսիլվանահայ գաղութի մղած պայքարից հետո՝ 1930 թ. հունիսի 5-ին վերահաստատվեց Ռումինահայերի հռոմեական թեմի առաջնորդությունը։ Սակայն ամեն ինչ ուշ էր, Տրանսիլվանահայ գաղութը արդեն պատմության գիրկն էր անցել։ Եթե միայն Գեռլա Հայաքաղաքում 130 տարի առաջ, ըստ Մ. Բժշկյանի տեղեկության[39], 6000 հայեր էին բնակվում, ապա 20-րդ դարի սկզբին նրանց թիվը իջել էր 2000-ի[40], իսկ ներկայումս հազիվ 350—400 հունգարացած հայեր են մնացել այնտեղ։ Միայն սակավաթիվ ծերունիների հիշողության մեջ է, որ դեռևս մնում են հայերեն մի քանի բառեր։ Գեռլայում հայոց լեզուն դեռևս շարունակում է մնալ միայն եկեղեցում, որտեղ Ռումինիայի հայոց կաթոլիկների հոգևոր առաջնորդ Զոլթան Լենգելյանը, որը Վիեննայի մխիթարյանների մոտ է ստացել իր հայեցի ուսումը, կատարում է հայերեն լեզվով արարողություն, իսկ հունգարացած հայերն էլ երբեմն երգում են հայերեն, գրեթե առանց ոչինչ հասկանալու։

* * *

Երկար ժամանակ հայագիտության համար պարզ չէր, թե Գեռլայում ինչքան հայերեն ձեռագրեր էին պահվում։ Ձեռագրերի թվի մասին եղած տեղեկությունները շատ կցկտուր և հակասական էին։

Մինաս Բժշկյանը XIX դարի սկզբին անցնելով Գեռլայից, ձեռագրերի գոյության մասին ոչ մի խոսք չի ասում իր ուղեգրության մեջ։ Ավելի ուշ (1876 թվականին) Արշակ Ալթունյանը այցելելով Գեռլա՝ 200 ձեռագիր է գտել այնտեղ. նա գրել է. «... Եկեղեցվո մյուս կողմի վերնատունն ալ թանգարան է, ուր գաղթականք Անիեն հետերնին բազմաթիվ գիրք բերած ըլլալով, հոս ալ Պաշպալովի պես կարգված ու ցրված է, մեկ քանին վիեննացիք, մեկ քանին ալ վենետիկցիք տանելով, այնպես որ հիշյալ թանգարանին մեջ այսօր ընդամենը 200 կտոր ձեռագիր մատյան կա... փոշիներուն տակ թաղված են և բնավ հոգ տանող չկա այդ հնությունները պահելու»[41]։ Գրիգոր Գովրիկյանը, երբ լույս էր ընծայում Գեռլա Հայաքաղաքին նվիրված իր հատորը՝ 1896 թ. Գեռլայի մեջ միայն 50-ի չափ ձեռագրեր է հիշատակում։ Գովրիկյանը գրում է, որ Մոլդովայից գաղթի ժամանակ «Տրանսիլվանիոյ ազգայինք հետերնին բերած են բավական հայերեն ձեռագիր...» և ապա շարունակում. «Ո՞ւր են ասոնք հիմա։ Պատասխանը կրնա ըլլալ, թե 1. ժամանակին ախտաներն ամեն բան ի վիճակի են ոչնչացնելու. 2. Ասոնք՝ անհոգությամբ, տգիտությամբ հետև հետև

[38] «Ararat», 1927, Bucureşti.

[39] Մ. Բժշկյան, Ճանապարհորդութիւն ի Լեհաստան և յայլ կողմանս բնակեալս ի հայկազանց սերելոց ի նախնեաց Անի քաղաքին, Վենետիկ, 1830, էջ 199։

[40] Ս. Էփրիկյան, Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, հատոր երկրորդ, էջ 380—381, Վենետիկ, 1907։

[41] Արշակ Մ. Ալթունյան, Տեղեկագրութիւն հայոց գաղթականութեան..., էջ 55։

*երես ձգված ու փճացած են։ 3. Ճարտար անձինք, որոնք առանց ներքին հարգը ճանչցած են, անդերմեն վերցուցած տարած են»[42]։ 1925 թվականին բանասեր Մ. Պոտուրյանը Գհեռլայում գտնում է 150 ձեռագիր[43]։ Ֆրանսիացի հայագետ Ֆր. Մակլերը, որ մասամբ ուսումնասիրել է նաև Տրանսիլվանիայի հայերեն ձեռագրերը, Գհեռլայում հիշում է միայն 70 ձեռագիր[44]։ Մի քանի տարի անց, դարձյալ Մակլերը իր մի այլ աշխատության մեջ[45] հայտնում է, որ Գհեռլայում կա 60 հայերեն ձեռագիր։ Ինչպես հայտնի է, ինչ-ինչ պատճառներով, նրան չհաջողվեց ցուցակագրել այդ ձեռագրերը։*

*Մակլերը նշում է, որ Գր. Գովրիկյանը կազմում է Գհեռլայի ձեռագրերի ցուցակը, որը ծանոթագրելու է Պ. Ֆերհատյանը[46]։ Հայտնի է, սակայն, որ «Հանդէս Ամսօրեայ»-ում Գովրիկյանը հրատարակել է միայն 7 ձեռագրի նկարագրություն[47]։ Բանասեր Հ. Ճ. Սիրունին իր մի հոդվածում Գհեռլայի ձեռագրերի թիվը նույնպես համարում է 50, ասելով նաև, որ Հայաքաղաքի ձեռագրերի թիվը շատ ավելի մեծ է եղել[48]։ 1943 թվականին Զոլթան Տակաչը «Հայ արվեստը Տրանսիլվանիայում» խորագրով հոդվածում, համառոտակի խոսելով Գհեռլայում պահվող հայերեն ձեռագրերի մասին, նրանց թվի մասին ոչինչ չի ասում[49]։*

*Առաջին համաշխարհային պատերազմից հետո Գհեռլան ևս, Տրանսիլվանիայում գտնվող մյուս հայաշատ կենտրոնների հետ, անցավ Ռումինիային։ 1930 թվականին, երբ Բուխարեստում կազմակերպվեց Հայ Արվեստի ցուցահանդես, այնտեղ ցուցադրվեցին նաև Գհեռլայում պահվող մի քանի հայերեն ձեռագրեր։ Սակայն այնպես էլ կարելի չեղավ իմանալ Գհեռլայի ձեռագրերի թիվը և կազմել ու հրատարակել նրանց գիտական ցուցակը։ 1940 թվականին Տրանսիլվանիայի մեծ մասը, ներառյալ նաև Գհեռլան, դարձյալ միացվեց Հունգարիային, իսկ 1944 թվականին՝ վերադարձվեց Ռումինիային։*

*1948 թվականի ամռանը, երբ ռումինահայ «Հայաստանյան ճակատ» հայրենասիրական կազմակերպության կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ ուսումնասիրական ճանապարհորդություն էինք կատարում Ռումինիայում գտնվող երբեմնի հայաշատ բոլոր քաղաքները,- այցելեցինք նաև Գհեռլա։*

---

42 *Գրիգոր Գովրիկյան, Տրանսիլուանիոյ հայոց մետրապոլիսը..., էջ 319—320։*

34 *Հ. Մ. Պոտուրյան, Գհեռլայի հայերէն ձեռագիրները, «Նաւասարդ», Բուխարեստ, 1925, էջ 87։*

44 Frédéric Macler, Rapport... en Roumanie..., p. 10.

45 Frédéric Macler, Manuscrits arméniens de Transylvanie. Rapport sur une mission scientifique en Transylvanie (Sept.—Oct. 1934), Paris, 1935, p. 20.

46 Frédéric Macler, Rapport... en Roumanie..., p. 10, ծան. 1։

47 *Ա. Բ. Գհերլայ Հայաքաղաքին մայր եկեղեցւոյն հայերէն ձեռագրաց ցուցակը. «Հանդէս Ամսօրեայ», 1913, էջ 690—697, 1914, էջ 219—228, 667—674։ Տես նաև նրա նախորդ հոդվածները. Հովհ. Անեցի, Ազգային ձեռագիրք ի Գհերլա, «Հ. Ամ.», 1890, էջ 19—21. Հովհ. Անեցի, Գհերլայի մատենադարանէն մեկ երկու ձեռագիր, «Հ. Ամ.», 1895, էջ 300—305, նույնը տես նաև Գր. Գովրիկյան, Տրանսիլուանիոյ Հայոց..., էջ 318—348։*

*Բանասեր Ն(երսես) Ա(կինյան)ը Պետրոս Ֆերհատյանի մասին գրած իր մահախոսականում («Հանդէս Ամսօրեայ», 1914, էջ 678) գրել է, որ հանգուցյալը (իմա՝ Ֆերհատյանը) ավարտել է Գհեռլայի Ս. Երրորդության եկեղեցու հայերեն ձեռագրերի ցուցակը և հույս է հայտնում, որ այն լույս կտեսնի իբր շարունակություն Ա. Բ.-ի (իմա Գովրիկյանի) աշխատության։ Սակայն Ֆերհատյանի այս գործը ևս լույս չի տեսել։*

48 H. Dj. Siruni, Note armene, „Revista Istorică", 1929, IV—VI, p. 124—138.

49 Zoltán Felvinczi Takács, L'art arménien en Transylvanie, „Europa", 1 IX 1943, Budapest, p. 19—26, տես նաև նույնի իտալերենը։

Սակայն Գեռլայի թանկարժեք ձեռագրերը այնտեղ չէին։ Թեմի առաջնորդ Զաթիկ Լենգերյանը մեզ հայտնեց, որ պատերազմի ընթացքում ապահով վիճակում պահելու համար հայկական ձեռագրերը, այլ արժեքավոր իրերի հետ (որոնց մեջ նաև Ռուբենսի նկարը), փոխադրել են Բուդապեշտ։ Նա հայտնեց, որ դիմել է Ռումինական ժողովրդական Հանրապետության այն ժամանակվա Մինիստրների խորհրդի նախագահ, այժմ հանգուցյալ դոկտ. Պետրու Գրոզային և վստահ է, որ շուտով այդ բոլորը պիտի կարողանա Գեռլա վերադարձնել։ Տեղվույն Ս. Երրորդության հայկական մայր տաճարի վերնատունը, ինչպես նաև ժողովրդապետարանի գրադարանի ու Հայ աղջիկների որբանոցի շենքում (ուր պահվում էին Գեռլայի երբեմնի ճոխ թանգարանի մնացորդները), երկար որոնումներից հետո, տպագիր գրքերի հետ խառն վիճակում, կարողացանք գտնել շուրջ 20 ձեռագրեր, գրեթե բոլորն էլ գրված XVIII դարում։ Նույն 1948 թվականին արդեն Ռումինիայից ներգաղթեցինք Սովետական Հայաստան, և այնպես էլ մեզ չհաջողվեց տեսնել ու ծանոթանալ Բուդապեշտ փոխադրված ձեռագրերին։

Եվ ահա, Գեռլա կատարած մեր առաջին ճանապարհորդությունից 12 տարի հետո, տեղեկանալով, որ Բուդապեշտից ետ են ստացվել հայերեն ձեռագրերը և պահվում են Գեռլայի հայ համայնքի մոտ, մենք 1960 թ. դեկտեմբերի 18–21-ին բախտ ունեցանք կրկին այցելել Գեռլա և տեսնել այնտեղի հայերեն ձեռագրերը։ Գեռլա հասնելուց մի քանի օր առաջ այդ ձեռագրերը արդեն պետականացվել էին և Զաթիկ Լենգերյանի կողմից եկեղեցու հրդեհից փրկվելով, փոխադրվել Գեռլայի պետական շրջանային թանգարան։

Գեռլայի շրջանային թանգարանը, որը ստեղծվել 1951 թվականին ժողովրդա-դեմոկրատական կարգերի շնորհիվ, բավականին հարուստ նյութեր ունի։ Նրա հիմքում դրված է Գեռլայի երբեմնի Հայկական թանգարանը։ Այստեղ ցուցադրված են քաղաքի մոտ պեղված հռոմեական շրջանին վերաբերող գործիքներ, դրամներ, արձանիկներ և այլն։ Կարևոր տեղ է հատկացված նաև Նոր Գեռլային։ Թանգարանի սրահներից մեկի վրա գրված է «Հայկական սրահ» («Sala armeană»), ուր տեղափոխված են Գեռլայի երբեմնի հայկական թանգարանից մնացած որոշ նյութեր և վերջերս հայ համայնքից ստացված ձեռագրերը։ «Հայկական սրահ»-ում ցուցադրված են Գեռլայի հայերի յուղաներկ դիմանկարներ, հայ ազնվականների զգեստներ, Գեռլայի հիմնադիր Օքսենտ Վրզարյանի եպիսկոպոսական թագը, զգեստը, հայերեն արձանագրության քարի վրա, Գրիգոր Լուսավորչի անվան հայկական «Եղբայրության» դրոշը, հայերին պատկանած կենցաղային առարկաներ ու կահույք, հայ առևտրականների օգտագործած դրամներ, կնիքներ, եկեղեցական սպասներ, Հայաքաղաքին արված կայսերական հրովարտակներ, ոսկյա և արծաթյա թելերից ասեղնագործված զգեստներ, կոշկակարների եղբայրության սնդուկը, հնատիպ և նոր բազմաթիվ տպագրված հայերեն գրքեր, և այլն, և այլն։ Այս բոլորի ուսումնասիրումը մեծ կարևորություն կարող է ունենալ Հայաքաղաքի պատմության համար. սակայն մեր ժամանակը շատ կարճ էր, հետևաբար մեր միակ մտասևեռումը Հունգարիայից հետ բերված հայերեն ձեռագրերի ուսումնասիրումն էր։

Գեռլայի շրջանային թանգարանի տնօրեն, պատմաբան Ալեքսանդրու Նիկոլան, ընդառաջելով մեր խնդրանքին, սիրահոժար փոխադրեց թանգարանում գտնվող բոլոր հայերեն ձեռագրերը իր առանձնասենյակը և հնարավո-

թյուն ստեղծեց նրանք ուսումնասիրելու: Վերջապես մեզ հայտնի դարձավ, որ միայն Թանգարանում պահվող ձեռագրերի թիվը ուղիղ հարյուր է, առանց հաշվելու 1948 թվականին մեր տեսած շուրջ 20 ձեռագրերը:

Ձեռագրերից մեկին փակցված պիտակի վրա մեզ հանդիպեց 254 համարը. հավանական է ենթադրել, որ մի ժամանակ այդքան և գուցե ավելի մեծ է եղել Հայրապատի ձեռագրերի քանակը, սակայն հետզհետե նվազել է նրանց թիվը: Ինչպես երևում է մեր կազմած ցուցակից, միայն Զ. Կապուտչյանի գործերից բազմաթիվ հատորներ այժմ պակասում են:

Ձեռագրերի ուսումնասիրության դժվարությունը կայանում էր նրանում, որ նրանց բովանդակությունը դեռևս հայտնի չէր: Անհրաժեշտ էր նախ թերթել յուրաքանչյուր ձեռագիր, որոշել նրանց մեջ ընդօրինակված նյութերի բովանդակությունը, գրման ժամանակը, գրչի ու ստացողի անունները և այլն: Ապա պետք էր այդ բոլոր տեղեկություններից կազմել մի համառոտ ձեռագրացուցակ՝ հայերեն և ռումիներեն լեզուներով, մեկը՝ մեզ, իսկ մյուսը՝ թանգարանի համար: Անհրաժեշտ էր նաև լուսանկարել մի շարք մանրանկարներ, սկզբնաթերթեր, հիշատակարաններ և այլն: Նկատի ունենալով, որ այս ամենաանհրաժեշտ աշխատանքն իսկ դժվար էր ավարտել մեր տրամադրության տակ եղող երեքուկես օրում, ստիպված սկսեցինք աշխատել առավոտից մինչև կես գիշեր:

Դժվար է սույն հոդվածում մի առ մի կանգ առնել Գեղարդում պահվող թեկուզ ամենաարժեքավոր ձեռագրերի վրա, այդ պատճառով էլ ստիպված ենք առայժմ բավարարվել միայն համառոտ ակնարկով:

Անհրաժեշտ է նախ նշել, որ Գեղարդում պահվող ձեռագրերի գրչության վայրերն իսկ բավական են ցույց տալու, թե հայերը մասնավորապես որ վայրերից են գաղթել Ռումինիա և կամ ռումինական որ քաղաքներից եկել ու հաստատվել Գեղա Հայրապատում:

Այդ ձեռագրերից հնագույնը և մանրանկարչական տեսակետից ամենաարժեքավորը 1310 թ. Կիպրոսում ընդօրինակված Նոր կտակարանի և Ճաշոց գրքի մասեր ունեցող մագաղաթյա մի ժողովածու է: Ընդօրինակված է ժամանակի նշանավոր գրիչներից մեկի՝ Ստեփանոս Գոյներիցանցի կողմից: Ձեռագիրը կազմել և ոսկեզօծել է Սարգիս քահանան: Ստացողն է Լամբրոնի տեր Հեթումի դուստր Ալիծ տիկինը: Սույն ձեռագիրը շատ ընտիր և նուրբ սկզբնաթերթեր ունի, որոնք կրում են Կիլիկյան Հայաստանի մանրանկարչության արվեստի ոճը (նկ. 1): Այս ձեռագրի մանրանկարչության ոճին մոտ է կանգնած մի այլ ձեռագիր (Ավետարան), որի գրիչն է Հովհաննեսը, իսկ մանրանկարչի անունը չի պահպանվել: Մեր համեստ կարծիքով, ինչպես վերոհիշյալ, այնպես էլ այս ձեռագրի ծաղկողը նշանավոր մանրանկարիչ Սարգիս Պիծակն է: Նրա մանրանկարները հար և նման են մեր Մատենադարանում պահվող և Սարգիս Պիծակի կողմից նկարազարդված № 5786 Ավետարանի, ինչպես նաև անցյալում Ռումինիայի Բոտոշան քաղաքում պահվող, իսկ այժմ մեր Մատենադարանի սեփականությունը կազմող № 9510 ձեռագրի մանրանկարների հետ, որը դարձյալ Պիծակի գործն է[50]: Գեղարդի այս ձեռագրի կեսը ոչնչացել է Մոլդովայում կազակների արշավանքի ժամանակ. այն՝ թղթի թերթերով լրացվել է 1659 թ.-

[50] Մատենադարանի ձեռ. № 9510: Տես նաև Ա. Քոլանջյան, Ռումինահայերի արժեքավոր նվերը Հայաստանի Մատենադարանին, «Բանբեր Մատենադարանի», № 3, Երևան, 1956, էջ 222:



Նկ. 1. Նոր կտակարանի և ճաշոցի ժողովածու. 1310 թ. Կիպրոս. Գրիչ՝ Ստեփանոս Գոյներիցյանց. ծաղկող՝ հավանաբար Սարգիս Պիծակ։



Նկ. 2. Հովհաննես ավետարանչի և Պրոխորի մանրանկարը (Ավետարան, 1346 թ. Սուրխաթ):

Սուչավայում, Ավետիք սարկավագի կողմից։ Ձեռագրի այս երկրորդ մասի հիշատակարանում թանկագին տեղեկություններ են պահպանվել Սուչավայի հայ կարիճների եղբայրության գործունեության մասին։ Հիշատակարանից երևում է, որ կարիճները զբաղվել են նաև ձեռագրերի փրկման նվիրական գործով, հիշատակվում են 10 եղբայրների անունները, որոնք կարողացել են ձեռագրի սկզբի մասը ազատել գերությունից և պակաս մասը գրել տալով 5 տարի հետո նաև կազմել են տվել այն և նվիրել Սուչավայի հայոց նշանավոր Ս. Օքսենտի կամ Զամկայի վանքին։

Ուշագրավ է 1346 թ. Սուրխաթում (Ղրիմ) գրված և մանրանկարներով զարդարված Ավետարանը (նկ. 2), ընդօրինակված Կիրակոս սարկավագի կողմից։ Ունի կանաչ գույնի թավշյա կազմ և արծաթապատ է։ Հիշյալ ձեռագրի արժեքի մասին Գեռլայում գործող ռումինացի պատմաբան բանասեր Յոն Ապոստոլ Պոպեսկուն, որը մեծ սիրով է ուսումնասիրում հայ ժողովրդի պատմությունը, հետաքրքիր մի ուսումնասիրություն է հրատարակել[51]։

Հավանաբար դարձյալ Ղրիմում պետք է գրված լինի 1382 թվականի ձեռագիր Մաշտոցը, որն ունի կողքերին ձայնագրված 2 թերթ պահպանակ-պատառիկ։

Խիստ ուշագրավ են նաև Ռումինիայի Մոլդովա նահանգում գրված հայերեն ձեռագրերը, որոնք շատ հազվագյուտ են հայ գրչության պատմության մեջ։ Մոլդովայի հայկական խոշորագույն կենտրոն Սուչավայի հայ գրչության և մանրանկարչության մասին հետաքրքրական նյութեր կարող են տալ այժմ Գեռլայում գտնվող և Սուչավայում գրված հետևյալ ձեռագրերը։ 1629 թվականին ընդօրինակված մի Հայսմավուրք, որը կշռում է 10,5 կգ, գրված է Սարգիս Մեխինենցու և Սրապիոն Բարերդցու կողմից և ունի ռումինական պատմության վերաբերող կարևոր ընդարձակ հիշատակարան, ուր նկարագրված է այդ թվականներին երկրում տիրող ֆեոդալական պայքարը Մոլդովայի իշխանական գահի շուրջը։ Սուչավայի հայտնի գրիչ Աբրահամ Սեչավցու 1603 թ. ընդօրինակած Մաշտոցը։ (Այս Աբրահամը ընդօրինակել է նաև մի Աստվածաշունչ, որն այժմ պահվում է Վիեննայի կայսերական մատենադարանում[52] և մի Ճաշոց գիրք, որը տեսել ենք Բուխարեստում, Ռումինական գիտությունների ակադեմիայի ձեռագրատանը[53])։ Մի Շարակնոց արտագրված 1628 թ. վերոհիշյալ Սարգիս գրիչ Մեխինենցու կողմից և վերջապես 1663 թ. Ազարիա Կղերիկոսից արտագրված մի Քահանայաթող։ Սուչավայում գրված հինգերորդ ձեռագիրը վերոնշյալ Ավետարանի կես մասի վերանորոգումն է, 1659 թ., կատարված Ավետիք սարկավագի կողմից։ Ուշագրավ է նաև նույն Մոլդովայի Յաշ քաղաքում գրված մի Ավետարան, որը հազվագյուտ մի նմուշ է Յաշում ծաղկած հայ գրչության և մանրանկարչության պատմության համար։ Ձեռագիրը ընդօրինակվել է 1659 թ. Սիմեոն քահանայի կողմից, ունի շատ հետաքրքրական մանրանկարներ (նկ. 3)։

Կան նաև ձեռագրեր այլ վայրերում գրված։ 1606 թ. Տարոնի Ղազարու

---

[51] Ion Apostol Popescu, In jurul unui Evangheliar din 1346. „Steaua", № 2, Febr., 1958. Cluj. p. 106—108.

[52] Հ. Տաշյան, Ցուցակ հայերէն ձեռագրաց կայսերական Մատենադարանին ի Վիեննա, Վիեննա, 1891, էջ 17—20։

[53] Ս. Քոլանջյան, Ռումանահայոց մտքի գանձարան «Հայ մշակույթի տունը», «Էջմիածին», Երևան, 1948, 5—6, էջ 65։



Նկ. 3. Մատթեոս ավետարանչի մանրանկարը և սկզբնաթերթը. (Ավետարան, ընդօրինակված 1639 թ. Սիմեոն քահանայի կողմից Մոլդովայի Յաշ քաղաքում)։



Նկ. 4. Ստեփանոս Ստեփանյան Ռոշքայի քերականությունը, գրված 1718 թ. Ստանիսլավում։

վանքում գրված մի Ավետարան, որի մասին Զոլթան անուն ուսումնասիրողը մի քանի տող նվիրելով, սխալմամբ ընդօրինակված է համարել 1306 թվականին[54]: 1648 թ. Լվովում Սարգիս եպիսկոպոս Թոխաթեցու կողմից ընդօրինակված մի Տոնացույց և Պարզատումար, XVII դարում արտագրված մի Սաղմոս, 1590 թ. Երուսաղեմում արտագրված մի Մաշտոց, XVII դարում, հավանաբար Սուչավայում գրված մի Կանոնագիրք, 1703 թ. Լվովում գրված «Թուղթ քաղաքիական առ ուղղափառս մերազնեայս, որ ի քաղաքին Լվովիոյ...» ընդարձակ աշխատությունը (գրված է Նիկոլի հաջորդ Վարդան Հունանյանի կողմից[55] և նվիրված է Թուրքիայում հալածանքի ենթարկված հայ կաթոլիկների պաշտպանությանը):

Գեռլայի ձեռագրերում կան նաև փիլիսոփայական երկեր, որոնցից անհրաժեշտ ենք գտնում հիշատակել. Լվովի հայ վարժարանի տեսուչ Կղեմես Գալանոսի «Վիճաբանութիւնք ոմանք որք պատկանին առ գիտութիւն մետաֆիզիկային, որ թարգմանի համարձակաբանութիւն», արտագրված է 1682 թ.[56]: Կան նաև երկու հատորներ, սակայն առանց հեղինակի անվան նշման. «Նախկին մասն փիլիսոփայութեան, որ լօճիքայ կամ դիալեքտիկա յորջորջի» և «Երրորդ մասն փիլիսոփայութեան բարոյական յառաջաբանութիւն»:

Բառարաններից պետք է հիշել 1658 թ. «Ճանապարհն Երևանայ ի Վարդանայ համբակէ» ընդօրինակված հայերեն լեզվի բառարանը, որը ամենայն հավանականությամբ Երեմիա Մեգրեցու հեղինակությունն է: Փոքր բառգրքերն հայերեն-թուրքերեն, հայերեն-լատիներեն, հայերեն-լեհերեն, լատիներեն-հայերեն-նեմեցերեն (իմա՝ գերմաներեն), պատմական փոքր ժամանակագրություն հայատառ ղփչաղերեն և այլն:

Անհրաժեշտ է նշել նաև կամենացի հայ գիտնական Ստեփանոս Ստեփանյան Ռոշքայի հայոց լեզվի քերականությունը գրված 1718 թ. Ստանիսլավում: (Նկ. 4): Այդ աշխատությունից, ինչպես Մատենադարանում, այնպես էլ Վիեննայի Մխիթարյանների մոտ (ըստ Տաշյանի կազմած ցուցակի) ոչ մի ընդօրինակություն չի գտնվում: Ռոշքայի գործերից է նաև նրա շարադրած «Տօնացոյց ըստ ուղղափառաց Հայոց» ձեռագիրը, իսկ նրա թարգմանությամբ է «Բարոյական աստուածաբանութիւն» գործը: Շատ ուշագրավ են Ստեփանոս Ռոշքայի կողմից 1729 թ. Գեռլայում սահմանված մի շարք եղբայրությունների կանոնագրությունները, որոնք սահմանել է նա իբրև «Եկեղեցեաց Հայոց Դրանսիլվանիոյ այցաւոր»: Դրանցից են «Գրիգոր Լուսավորչի» անվան եղբայրության կանոնագրությունը՝ Հայաքաղաքի տանուտերների համար, «Յովակիմայ և Աննայի եղբայրութեան» կանոնագրությունը տանտիկնանց համար, «Ամենասուրբ երրորդութեան եղբայրութեան» կանոնագրությունը կարիճների համար:

Գեռլայի ձեռագրերում գտանք նաև «Գիրք նուիրելոց. անունք մեռած աղբարաց ու քվըրաց եղբայրութեան ամենասուրբ երրորդութեան կրաճփորաց...» գործը, ուր նշված կան 712 անուններ:

Մեծ է թիվը Գեռլայում գրված հայերեն այն ձեռագրերի, որոնք ոչ միայն

[54] Zoltan Felvinczi Takács, L'art arménien en Transylvanie..., p. 24.

[55] Հմմտ. Հ. Տաշյան, Ցուցակ... Մխիթարեանց ի Վիեննա..., էջ 116: Ստ. Ռոշքան իր ժամանակագրության մեջ նշում է, որ Վարդան Հունանյանն է գրել վերոհիշյալ աշխատությունը:

[56] Մատենադարանում պահվում են այս աշխատության 6 ընդօրինակություններ (տե՛ս «Բանբեր Մատենադարանի», № 3, էջ 430):

Հայաքաղաքի պատմության, այլև նրա անհետացած բարբառի մասին կարևոր տվյալներ են բովանդակում։ Նրանց մեջ առանձնապես արժեքավոր են Հայաքաղաքի խորհրդարանի արձանագրությունների երեք ստվար ձեռագիր հատորները, որոնք բաղկացած են մոտ 3000 էջերից. նրանց ճնշող մեծամասնությունը գրված է հայերեն լեզվով։ Արձանագրությունների մի ստվար մասը վերաբերում է 1714 թվականից (Հայաքաղաքի խորհրդարանի բացումից և առաջին դատավորի ընտրությունից) սկսած մինչև 1796 թվականը տեղի ունեցած դատական գործերին։ Այս մատյանների մանրազնին ուսումնասիրումը և հրատարակումը կարևոր նշանակություն կունենա անհետացած մի գաղթավայրի իրավաբանական մտքի պատմության համար։ Կենցաղային և լեզվական իմաստով արժեքավոր է նաև գեռլացի Սիմոն Գորգուլյանի մեծադիր քարոզագիրքը բաղկացած 614 էջից։ Կան նաև Գեռլայում գրված մի շարք երգարաններ, որոնց մեջ գտնվում են նաև հայատառ հունգարերեն գրված երգեր, Տոնացույցեր, Խորհրդատետրեր, Աղոթագրքեր, Մաշտոցներ, Տաղարաններ և այլ գրչագրեր, մեծ մասամբ գրված XVIII դարում։

Հայաքաղաքի մտավոր կյանքի պատմության համար ուշագրավ են և արժեքավոր գեռլացի բազմավաստակ գործիչ Զաքարիա Կապրուշյանի (1794—1870) 32 հատոր ձեռագիր անտիպ աշխատությունները։ Սրանցից արժանի են հիշատակության մի քանիսը, որոնցից է «Պատարեալ է, ստանեալ գիրք շարագրեալ ի Զաքարիայէ Կապրուշեան, ողբալ զՀայաքաղաքն, որ է ի դաւառ Դրանսիլվանիայու 1840 թ.» խորագրով գիրքը (նկ. 5), որտեղ հեղինակը ողբում է Հայաքաղաքի վիճակը, նրան սպառնացող վտանգը, հայերի մեջ տարածված օտարամոլությունը, հայերեն լեզվի հետզհետե մոռացվելը. պատասխանում է քաղաքի վերնախավին։ Կապրուշյանի ուշագրավ գործերից է նրա երգիծական բանաստեղծությունների 500 էջանոց ժողովածուն գրված 1839 թ. «Վասն շահապետութեան այնոցիկ, որք արամեայք են սրտիւք»։ Հետաքրքրական է դրամի համար ամուսնացողի վախճանը նկարագրող երգիծական ոտանավորը և այլն։ 9 հատոր է կազմում Կապրուշյանի «Վարք Էմանուել Լօրենզօի» և 7 հատոր նրա «Գիր որ կոչի աստուածային նախախնամութիւն» վեպերը, որոնք բոլորն էլ գրված են արամախոսության (գիալոգային) ձևով։ Մենք կարծում ենք, որ հիշյալ վեպերը, կամ նրանցից որոշ հատվածներ, իբրև երկխոսական գործեր կարող էին ներկայացվել Գեռլայի թատրոնում, քանի որ Կապրուշյանի անվան հետ են կապված նաև Հայաքաղաքում տեղի ունեցած թատերական ներկայացումները՝ XIX դարի առաջին կեսին։ Կապրուշյանը հորինել ու կազմել է նաև մի շարք երգարաններ, որոնք, ինչպես ինքն է գրել, արել է «Հայ ազգին սիրուն»։ Հատկապես արժեքավոր է Կապրուշյանի 1849 թվականին ավարտած «Նոր բառգիրք հայ-լատին և մաճառ լեզվաց» աշխատությունը, որի միայն չորրորդ և հինգերորդ հատորները կարողացանք գտնել Թանգարանում։ Աշխատությունը ամբողջ լինելու դեպքում կունենայինք ավելի քան 2000 մեծադիր էջերից բաղկացած, իր տեսակի մեջ եզակի մի բառարան։ Բառարանի հայերեն բառերի միայն մեկ էջի համեմատությունը Նոր Հայկազյան բառգրքի և Առձեռնի հետ ավելի բավականին տարբերություններ. այս բառգրքում կան մի շարք նոր բառեր։ Կապրուշյանի կնքագիտությունը (Heraldica) նվիրված լատիներեն աշխատության չորս հատորներից միայն մեկն է այժմ պահվում Թանգարանում։ Պահպանվում է նաև Կապրուշյանի ինքնակենսագրությունը, որը թերի է մնացել նրա մահվան պատճառով, և այլ գործեր։ Ցանկալի

կլինեն, որ գենուացի ազգասեր այդ համեստ մշակի կյանքը ուսումնասիրվեր ավելի հանգամանորեն։

1960 թ. դեկտեմբերի 21-ի երեկոյան, երբ արդեն պետք է մեկնեինք Գենուայից, համարձակություն ունեցանք խնդրելու հայերեն ձեռագրերից մի քանիսը, որպես Հայաստանի պատմության թանկարժեք հուշանվեր՝ Սովետական Հայաստան—Մատենադարան տեղափոխելու։ Մեր խնդիրը ի վերջո հարգվեց, և մենք Գենուայից Բուխարեստ, այնտեղից էլ Երևան—Մատենադարան բերեցինք չորս արժեքավոր ձեռագրեր և մեկ պատառիկ։

* * *

Մատենադարանին իր ընծա բերած առաջին ձեռագիրը Գենուայի նշանավոր տաղարանն է։ Այդ գրչագիրը մինչև մեր օրերը հասած սակավաթիվ աշխարհիկ տաղարանների մեջ ամենաընտիրներից մեկն է։ Գենուա քաղաքի պատմության հեղինակ Գր. Գովրիկյանը այս տաղարանի մասին ոչինչ չի ասել, չնայած ծանոթ է եղել նրան և հրատարակել է նրա մեջ ընդօրինակված արժեքավոր ստեղծագործություններից մեկը՝ Մինաս Թոխաթեցու ողբը[57]։

Առաջինը, որ ուշադրություն է դարձրել այս տաղարանի վրա, եղել է անվանի բանասեր Մ. Պոտուրյանը։ Նա 1923 թ. Բուխարեստում լույս տեսնող «Նավասարդ» հանդեսի էջերում համառոտակի ներկայացրել է այս տաղարանը, և ապա հրատարակել Ֆրիկի «Վասն ի վերայ երթալոյ աշխարհին» բանը[58]։ Քիչ հետո, դարձյալ «Նավասարդ»-ում Գենուայի մատենադարանապետ դոկտ. Մարտին Կապուտանը Պոտուրյանի առաջարկով հրատարակել է տաղարանի համառոտ ցանկը[59], թեև տալով սակայն մի շարք սխալ վերծանումներ։ Բանասեր Ն. Ակինյանը, հրատարակելով իր «Հինգ պանդուխտ տաղասացները» երկը, օգտվել է Վիեննայի Մխիթարյան մատենադարանում պահվող Գենուայի տաղարանի ընդօրինակությունից[60]։ Այսպիսով, տաղարանը մինչև այսօր հանգամանորեն չի ուսումնասիրված։ Տաղարանն ընդօրինակված է հայ միջնադարյան նշանավոր տաղասաց Հակոբ Թոխաթեցու (1573—1680) կողմից։ Սա Ստեփանոս Թոխաթեցու Եվդոկիայի ողբից հետո գրանցել է այսպիսի տողեր.

Յակոբ էրէցըս Թօխաթցի,
Յայն ժամանակն ի ՌՃԻ եկի,
Յորժամ ըզտաղս որ ես տեսի
Նստեալ լալով փոխարկեցի։

Եվ հետո. «Զմեղաւոր գրչակս մի մոռանայք» (էջ 277բ)։

Մի այլ տաղի սկզբում, կարմիր թանաքով գրված է. «Տաղ ազնիւ մեծատանն և Ղազարու, ասէր և ղանարժան Յակոբս յիշեցէք» (էջ 302բ)։

57 «Հանդէս Ամսօրեայ», 1888, էջ 39։

58 Հ. Մ. Պոտուրյան, Գենուայի հայերէն ձեռագիրները, «Նավասարդ», Բուխարեստ, 1925, Գ պրակ, էջ 87—88։

59 «Նավասարդ», Բուխարեստ, 1925, պրակ Գ. 122, Ե. 156—157, Զ. 174—175, Է. 217—218։

60 Ն. Ակինյան, Հինգ պանդուխտ տաղասացներ, Վիեննա, 1921, էջ 10, 15—29 և այլ էջեր։ Վիեննայի Մխիթարյան մատենադարանի № 797 ձեռագիրը Գենուայի սույն տաղարանի նոր ընդօրինակությունն է։ (Տես Ն. Ակինյան, Հինգ պանդուխտ տաղասացներ, էջ 10)։

Տաղարանի վերջին մասից երևում է, որ Հակոբ Թոխաթեցին սույն ձեռագիրը գրել է, որոշ ընդմիջումներով, 1605 թվականին.

«Ով ընթերցողք յորժամ որ կարդայք կամ օրինակէք մեղաւոր Յակոբ իրիցուս և իմոցն ամենայնի և ուսուցողացն իմոց աստուած ողորմի տացէք: Աղաչեմ զձեզ որ չի մեղադրէք անյարմարութեան գրիս, զի երբեմն երբեմն գրեցի ի թվ. ՌԾԴ մարտ Ժ (1605 մարտ 10)» (էջ 428բ, այժմ 412բ):

Տաղարանի վերջի թերթերը ընդօրինակվել են Հակոբ Թոխաթեցու որդի Աստուածատուր դպրի կողմից 1629 թվականին. «Գրեցաւ այս տաղս թվ. ՌՀԸ (1629) ձեռամբ Աստուածատուր դպրի, որդոյ տէր Յակոբի. յորժամ որ երգէք նաև զիս ի ձեր տօլուն յիշեցէք» (451բ, այժմ 434բ):

Ձեռագրի գրման վայրի մասին ոչ մի տեղեկություն չունենք, բայց հավանաբար գրված պետք է լինի Լեհաստանի Զամոսցա քաղաքում, քանի որ 1601—1602 թթ. Հակոբն այդ քաղաքի հայ եկեղեցու երեցն էր[61]:

Ձեռագրում ընդօրինակված են միջնադարյան մեծանուն բանաստեղծ Ֆրիկի մի շարք տաղերը, որոնք կամ բնավ չկան մեր մատենադարանի ձեռագրերում, կամ էլ 1—2 օրինակներով են հասել: Դրանցից է՝ «Տաղ Ֆրիկան ասացեալ վասն ի վերա եղբայրսպանին» ստեղծագործությունը (էջ 173բ—176բ): Ֆրիկի «Դիվանում» այս տաղը հրատարակվել է Վիեննայից ստացված մի ընդօրինակության հիման վրա, որն իր հերթին մի արտագրություն է Գեղայի սույն թանկարժեք տաղարանից[62]: Այս տաղարանը հիմնական բնագրի դեր է կատարել Ֆրիկի «Դիվանի» այլ տաղերի համար ևս:

Մեր մատենադարանում չունենք այս տաղարանում գտնվող Ֆրիկի հետևյալ գործը. «Արատ Ֆրկի ասացեալ, եկայք որ ի բաց թողունք զայս խաբօղ կեանքս որ չի խաբինք...» (էջ 179ա—183ա): Մատենադարանում միայն փոքր հատվածներով ունենք Ֆրիկի «Ի վերայ չարխի, աշխարհի և տօլվաթի» տաղը, որի լրիվը դարձյալ գտնվում է սույն տաղարանում (էջ 183ա—187բ): Որպես Ֆրիկի հռչակավոր «Գանգատի» հեղինակ տաղարանում հիշված է Հովհաննես Սարկավագի անունը. «Սարկաւագ վարդապետի ասացեալ մարտ ընդ աստուած» է գրված այստեղ (էջ 192ա): Գեղայի այս տաղարանում տեղ են գտել նաև Գրիգոր կաթողիկոսի, Ներսես Շնորհալու, Հովհաննես Երզնկացու, Գրիգոր Աղթամարցու, Մկրտիչ Տարոնացու, Առաքել Բաղիշեցու, Մկրտիչ Նաղաշի և այլ տաղասացների՝ ստեղծագործությունները: Տաղարանի արժեքը էլ ավելի է մեծանում մանավանդ նրանով, որ այնտեղ հանդես են գալիս ինչպես դպիր Հակոբ Թոխաթեցու, այնպես էլ իր ժամանակակից մերձավորների՝ Մինաս Թոխաթեցու, Վրթանես Սոնկեցու, Ղազար Թոխաթեցու, Խաչատուր Թոխաթեցու և ուրիշների տաղերը: Անհրաժեշտ ենք գտնում ասելու, որ Վրթանես Սոնկեցու Սուչավայից գրած տաղաչափյալ նամակները ուղղված Լվովում ապրող իր դասակցին՝ Գրիգոր վարդապետ Վարագեցուն, ինչպես նաև նրա մի քանի այլ գործերը[63] գիտությանը հայտնի են դարձել շնորհիվ Գեղայի սույն տաղարանի: Միայն այս ձեռագրում են պահվում և ցարդ անտիպ են մնում Հակոբ Թոխաթեցու գրած երկու տաղերը, նվիրված իր վարժապետ Այվաթենց կոչված Հակոբ քահանային (էջ 340բ—343ա, 348բ—350բ): Որքան մեզ հայտնի է,

---

61 Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Գ, Երևան, 1946, էջ 512:

62 Տիրայր արքեպիսկոպոս, Ֆրիկ, Դիւան, Նյու-Յորք, 1952, էջ 474:

63 Տե՛ս Ն. Ակինյան, Հինգ պանդուխտ տաղասացներ, էջ 10 և այլ բազմաթիվ էջեր:

անտիպ է նաև Ղազար Թոխաթեցու ստեղծագործությունը նվիրված Կարապետ Բարունուն, նրա Լեհաստան գալու առիթով (377ա—378բ): Մատենադարանի № 8029 ձեռագրում (էջ 227—230բ) գտնվող Տերտեր Երևանցու ստեղծագործությունը (իմաստասերի վեճը գինու և խաղողի հետ) կա որոշ տարբերություններով նաև այս ձեռագրում (460բ—464ա), սակայն առանց հեղինակի անվան:

Խիստ ուշագրավ է նաև այն, որ սույն ժողովածուում պահպանվել է մի անծանոթ հայրեն ու Խաչատուր Թոխաթեցու մի անհայտ գեղեցիկ տաղը, որոնք առ ի հետաքրքրություն հրապարակում ենք ստորև[64].

*Տես, թէ ինչ հայրէն մ'ասաց թուխ մարին իւր սրտէն ի դուրս.*
*Ելաք ի սարերս կացաք շինեցաք մեզ կարտանուս.*
*Ծալլատն բզդանակն առեր ու կանգներ դէմ երկու լուսուս,*
*Էրէցըն մորթուս սիրուն մրտիկ չայնէր իմ չար դողալուս.*
*Ժամկոչն անցուցարձ կայնէր չորս ոտացս ու չոր գլխուս: (էջ 132բ)*

Ի Թօխաթցի Խաչատուր իրիցուէ ասացեալ

*Տեսէք զամանըս զըդմենի,*
*Դեղնած կայնէկ որ իւրն ունի,*
*Փորն է լիւ կարմիր գինի.*
*Անուշ եղբայր քեզ խըմօղի:*
*Խըմեմ կըթխայ մի մեծ 'ւ լիւ,*
*Ի քեզ եղբայր իմ սիրելի,*
*Ըզպէրէքաթն Աբրահամի*
*Տայ ամանիս մինչ ի վերջի:*
*Դըզմեկ դու մեզ ես պարտական,*
*Զմեզ խըմցընես հաւատարական,*
*Առնեմք տաղեր և շարական*
*Նընջեցելոց մեր քաւարան:*
*Որ ի նախնումըն Յովնանի*
*Գըլխոյն եղեր դու հովանի,*
*Աշք ամենուն ի քեզ հայի,*
*Լըցոյ զկըթխաս առատ 'ւ լիւ:*
*Որպէս որդեակ ըզքեզ գըգուեն,*
*Վերայ ծընկաց զքեզ մեծարեն.*
*Թող չի պարպի փորէս գինին,*
*Թէ չէ շուտով կու արտորեն:*
*Աբրաամայ չես դու յայնես,*
*Երբ քու մեզաց լինի մեզ դեղ.*
*Խըմենք, եղբարք, այսօր մէկ տեղ*
*'Ի ապաշխարեմք վաղըն մէկ հեղ:*
*Այն որ ըզմեղըըն Պետրոսի*
*Եթող երից հաւախօսի.*
*Ջիմ ուստայ ճիպատր տօվլաթի,*
*Կարճահասակ Զաքէոսի:*

64 Այս անտիպ նյութերի վրա մեր ուշադրությունը հրավիրելու բանասիրական գիտությունների թեկնածու Ա. Մնացականյանը, որին հայտնում ենք մեր շնորհակալությունը:

Ով դո՛ւ չիմար մեղաց գերի,
Խըմելըն քեզ ի՞նչ շահ ունի,
Գիտ քո վիրացդ բալեղանի,
Որ չի այրիս ի գեհենի:
    Ել ի խնդիր դու բժշկի,
    Մատ ի պանդոկ, եկեղեցի,
    Բալեղանեա՛ ձէթ և [գ]ինի
    Այս է բաժակ յայժ գովելի:
Խաչիկ էրէց մեղսասիրող
Դատարկ բանի ես հետևող,
Ըղտիրածին առ քեզ մաղթող,
Որ տա քեզ խելք և մեղաց թող: (էջ 374բ—375ա)

Կարևոր նշանակություն ունեն նաև Տաղարանում գտնվող պատմական բովանդակությամբ մի շարք տաղերը, որոնցից են՝ Առաքել Բաղիշեցու «Ողբ Ստամպոլին», Կաֆայեցի Պարոնյուսի վկային նվիրված մի շարք տաղեր գրված Վրթանես վարդապետի և Թոմա երեցի կողմից, «Տաղ գեղեցիկ և ճաշելի ի վերայ Սասընցի տանուտրոջն, որ ընդ բանիւ եղև ի բռնանայէն իւրմէ և չհաւ ի Հռոմա արձակեցաւ», Ստեփանոս Թոխաթեցու և Հակոբ Թոխաթեցու ողբեր նվիրված Եվդոկիային (վերջինիս ողբն առաջին անգամ հրատարակել է Ղ. Ալիշանը հիմք ունենալով զարձյալ Գեղյայի սույն տաղարանը[65]), «Տաղ վասն շարժման կարմիր գխոյն, որ եկեալ այրեաց զհայոց աշխարհն մինչև Երզնկան», «Տաղ վասն Ցակոբ վարդապետին և ընկերաց նորին», որտեղ նկարագրվում է Վանից մինչև Երզնկա կատարված ավերումները, Մինաս Թոխաթեցու հերխային նվիրված հայտնի տաղը: Կան նաև տաղեր նվիրված Երուսաղեմին, գրված Սեֆիլ Գրիգորի (հայատառ թուրքերեն) և Ստամբոլցի Մզանեի Նիկողայոսի կողմից և այլն: Սույն ձեռագրից մի պրակ (304ա—316բ) ընկած լինելով՝ բացակայում է Մինաս Թոխաթեցու հայտնի «Ողբ ի վերայ Օլախաց երկրի հայերուն» պատմական արժեքավոր ստեղծագործությունը. սակայն բարեբախտաբար ժամանակին այդ բնագիրը հրատարակվել էր նույն ձեռագրից Գրիգոր Գովրիկյանի կողմից[66] (1926 թվականին, երբ գրկտ. Մարտոն Կապոտանը նկարագրում էր այս տաղարանը այդ պրակը դեռևս գտնվում էր ձեռագրում[67]): Ուշագրավ է, որ սույն ձեռագրի 166-րդ թերթի նյութը կապույտ թուղթ է, մի բան, որը անսովոր երևույթ է հայերեն գրչագրերի համար: Հիշյալ կապույտ թղթի մյուս մասը, որը տեղ պետք է գրավեր 157—158 թերթերի միջև, պատռված հանված է. այդ պատճառով էլ Մինաս Թոխաթեցու հերխային նվիրված տաղը պակասավոր է մնում:

Անկասկած Գեղյայի մեծարժեք այս տաղարանը կհարստացնի Մատենադարանում պահվող հայ միջնադարյան բանաստեղծությանը նվիրված ձեռագրերի թիվը և նրա հետագա մանրազնին ուսումնասիրումը կարևոր նշանակություն կունենա հայ միջնադարյան քնարերգության պատմության համար:

---

65 Ներսես Ակինյան, Հինգ պանդուխտ տաղասացներ, Վիեննա, 1921, էջ 173:

66 «Հանդէս Ամսօրեայ», 1888, 37—40, 62—63:

67 Մարթոն Քափոթան, Գեղյայի տաղարանին երգերը, «Նաւասարդ», 1925, Բուխարեստ, № 6, էջ 175:

Գեռլայի այս տաղարանը անցյալում պահվել է Հայաքաղաքի Ս. Երրորդության մայր եկեղեցու ձեռագրերի բաժնի 4-րդ դարանում և կրել է ԽԳա համարը[68]։ Ինչպես Գեռլայի մեր տեսած բոլոր ձեռագրերի, այնպես էլ սրա Ա. փեղկի ներքին մասում փակցված է մի պիտակ Ս. Երրորդության նկարով և հետևյալ գրությամբ. «Մատենադարան Ս. Երրորդութեան ի Հայաքաղաք»։ Կազմի արտաքին մասի Ա. փեղկին փակցված մի պիտակի վրա գրված է հունգարերեն Örmeny muz. 2373, որն անկասկած Գեռլայի երբեմնի հայկական թանգարանի համարն է։ Ձեռագրի թիկունքին կա մի պիտակ 21 համարով, որը ավելի ուշ շրջանի է։ Ձեռագիրը անցյալում ունեցել է 466 թերթ, իսկ այժմ ունի 451 թերթ, 13,5×10 սմ մեծություն. գրված է շղագրախառն բոլորագրով։ Գեռլայի տաղարանն այժմ պահվում է Մատենադարանում 10050 համարի տակ։

Գեռլա Հայաքաղաքից Մատենադարանին նվեր բերված ձեռագրերից երկրորդը՝ ժողովածու է, արտագրված 1440—1446 թթ.։ Ձեռագրում կան Հովհան Որոտնեցու և հատկապես Գրիգոր Տաթևացու իմաստասիրական-մեկնողական մի քանի աշխատությունները, Գևորգ Սկևռացու գրչության արվեստի մասին գրած աշխատությունը, Թովմա Ակրինացու «Յաղագս զօրուածոյ և խորհրդածութեան եկեղեցւոյ» գործը և այլ նյութեր։

Սույն ձեռագրի հնագույն հիշատակարանը 1440 թվականից է, ուր հիշվում են ստացող Եսային և գրիչ Օգսենտը. «Ընդ նմին յիշեսջիք և զստացող գրոցս զհամշիրար եղբայրն մեր զԵսայի կուսակրօն աբեղայն, որ յոյժ սիրող է գրոց աստուածայնոց և ընթերցող։ Եւ զիս զանարժան գրիչս զՕգսենդ սուտանուն աբեղայս, և որ զմեզ յիշէ ի տէր խնդրելով յիշեալ լիցի առաջի ահեղ ատենին Քրիստոսի, ամէն և եղիցի։ Թվին Հայոց ՊՁԹ (1440) ամի գրեցաւ» (109ա)։

Ձեռագրի ավարտման հիշատակարանը գրված է 1446 թ. «Զմեղապարտ եղբայրս՝ զՕգսէնդ աբեղայս և զհամշիրակ եղբայրն իմ զԵսայի աբեղայն՝ զստացող գրոցս ի տէր վարձատրեա միով տէր ողորմայիւ, և աստուած զձեզ յիշէ յիւր միւս անգամ գալըստեանն, ամէն և եղիցի։ Յամի մարդեղութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ՌՆԽԶ (1446) եւ Հայոց տումարիս ՊՂԵ (1446) գրեցաւ» (230բ)։

Վերոհիշյալ անունից հիշատակարանները ձեռագրի գրչության վայրի մասին մեզ ոչ մի տեղեկություն չեն տալիս։ Սակայն Լ. Խաչիկյանի կազմած ձեռագրերի հիշատակարանների ժողովածուի օգնությամբ հնարավոր է լինում պարզել, որ վերոհիշյալ ձեռագրի գրիչ Օգսենտը ոչ այլ ոք է, եթե ոչ Կաֆայի մոտ գտնվող Ս. Անտոնի վանքում աշխատող հայտնի գրիչ, ծաղկող և տոմարական աղյուսակներ կազմող Օրսենտ (Օգսենտ) աբեղան[69]։ Օրսենտը դեռևս 1451 թ. հիշատակվում է այժմ Մատենադարանում պահվող մի ձեռագրում իբրև ծաղկող[70]։ Ձեռագրի ստացող Եսային նույնպես գործել է հիշյալ վանքում և հայտնի է եղել իբրև տաղաչափ, տոմարագետ և աշխատությունների հեղինակ[71]։ Մատենադարանում գտնվում են երկու այլ ձեռագրեր, գրված նույն

68 Գ. Գովրիկյան, Մինաս Թոխաթեցի (նոր ձեռագիր), «Հանդէս Ամսօրեայ», 1888, էջ 39։

69 Լ. Ս. Խաչիկյան, ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, մասն առաջին (1401—1450 թթ.), Երևան, 1955, էջ 696։

70 Նույն տեղում, մասն երկրորդ, Երևան, 1958, էջ 12։

71 Նույն տեղում, մասն առաջին, էջ 696։

Օրբենաի կազմից, նույն Եսայիի համար. դրանցից առաջինը 1435 թ. արտագրված մի Մանրուսմունք[72] է, իսկ երկրորդը՝ 1441 թ. արտագրված մի Տոնացույց[73]։ Օրբենա գրիչը նշանավոր է իբր մանրագիր. նրա զարմանալի գրչին է պատկանում Մատենադարանի ամենափոքր, 19 գր. կշռող ձեռագիրը, որ Տոնացույց է, գրված 1434 թ. Կաֆայում[74]։

Գեղայից մեր բերած այս ձեռագիրը ևս շատ հետաքրքրական գրչություն ունի. թեև հիմնականում մանր բոլորագիր է, սակայն զգացվում են նաև նոտրի և շղագրի տարրեր։ Ձեռագիրը 1475 թ. հավանաբար Ամասիա է տարվել. այդ մասին է վկայում 224բ էջի ստորև բերվող հիշատակագրությունը. «Ի թվին ՋԻԴ (1475) և յունվար ԺԳ (13) ի Ամասիայ քաղաքս էաք ի սուրբ Նիկողայոս եկեղեցին»։ Այդ թվականին էր, որ Կաֆան գրավվեց թուրքերից և ղրիմեցի շատ հայեր արտագաղթեցին տարբեր վայրեր։

Ձեռագրի վերջում կա նաև ավելի ուշ շրջանի անթվակիր մի հիշատակագրություն. «Ով սուրբ ընթերցող որժամ ընթեռնուս զԱնտոն կրաւնաւոր նահատակս յիշեա և մեղայպարտ զՍարգիս վերջի բառացողս, ամէն» (232բ)։

Գր. Տաթևացու «Ի յուծումն պարապմանց սրբոյն Կիւրղի» գործի լուսանցքների վրա մի երկու տեղ կան գրված կաթոլիկական ոգով բացականչություններ այն հատվածների կողքին, որոնք ուղղված են լատինների և երկաբնակների դեմ։

Ձեռագիրն ունի նաև սկզբից և վերջից երկու երկծալ մագաղաթյա պահպանակ-պատառիկ, գրված մեսրոպյան բոլորագիծ երկաթագրով, գրչությամբ IX—X դդ. է։ Բովանդակում է Հովհաննու Ավետարանի Է-Ը գլուխներից հատվածներ։ Հետաքրքրական է, որ մի հատված վերնագրված է «Իբր կնոջ շնացելոյ», որ Հովհաննու Ավետարանի վերջին մասի տարականոն համարված մասը պետք է լիներ, սակայն այստեղ այդ վերնագրին հաջորդում է Հովհաննու Ը. գլխի սկզբի մասը։

Ձեռագրի կազմի Բ. փեղկի ներքին մասում կա Գեղայի հայկական թանգարանի 2379 համարը, և ապա Հայաքաղաքի մատենադարանի պիտակն է, իսկ քիչ ներքև՝ թիկունքին՝ մի այլ պիտակ 22 համարով։ Ձեռագիրը ունի 230 թերթ 13,7×9,3 սմ մեծությամբ։ Այժմ ձեռագիրը պահվում է Մատենադարանում 10051 համարի տակ։

Հայաքաղաքից բերած երրորդ ձեռագիրը մի Ավետարան է, որը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին Բուդապեշտ տարված լինելով, անձրևի տակ մնալու հետևանքով խիստ փչացել է, բոլոր էջերը իրար են կպել։ Ձեռագիրը գրված է նոտրագրով, ունի մանրանկարներ։ Ապահովաբար ընդօրինակված պետք է լինի XVII դարում։ Այդ ձեռագիրը բերել ենք հատկապես փրկելու նպատակով։ Մատենադարանի վերանորոգման բաժինը այժմ 10052 համարը կրող այդ ձեռագրի նկատմամբ միջոցներ կձեռնարկի, նրան նոր կյանք տալու համար։ Ձեռագիրը բաղկացած է 617 էջից և ունի 20×14,3 սմ մեծություն։

Գեղայից բերած չորրորդ ձեռագիրը տարիքով թեև ամենից երիտասարդն է (ընդօրինակված 1834—1835 թթ. Գեղայում), սակայն իր բովանդա-

---

72 Լ. Խաչիկյան, ԺԵ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, մասն առաջին (1401—1450 թթ.), Երևան, 1955, էջ 459։

73 Նույն տեղում, էջ 527։

74 Նույն տեղում, էջ 459։

կությամբ մի շատ ինքնատիպ աշխատություն է և անմիջականորեն կապված է Հայաքաղաքի պատմության հետ։ Միևնույն ժամանակ այդ ձեռագիրը որոշ հետաքրքրություն է ներկայացնում նաև Գեռլայի այժմ անհետացած բարբառը ուսումնասիրելու համար։ Ձեռագրի խորագիրը հետևյալն է. «Գանձատ գործ որ արնաւ աշխատանացըս ուէանց իրաւի արեցի յատուկ քաղքիս ընդէմ երիտր գիս անարգար թշնամուս սիրուն կի հալածէ. գրեցի ի Հայաքաղաքն, 1834 և 1835 ին»։ Նույն ձեռագրի հեղինակն ու գրիչն է գեռլացի բազմավաստակ մշակ Զաքարիա Կապրուշյանը, որի բազմաթիվ հեղինակությունների մասին առիթ ունեցանք քիչ առաջ խոսելու։ Կապրուշյանի այս աշխատությունը ականատեսի խիստ հավաստի ու կարևոր տվյալներ է պարունակում Հայաքաղաքի մշակութային պատմության և մասնավորապես Կապրուշյանի գործունեության մասին։ Հատկապես մեծ արժեք են ներկայացնում ձեռագրի այն փաստերը, որոնք վկայում են Գեռլայում հայ թատրոնի գոյության մասին։ Ա. Բ. Կարինյանը, հենվելով Գովրիկյանի հաղորդած տվյալների վրա, իր «Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության» աշխատության մեջ[75] հայտնում է, որ Կապրուշյանը «թատերական զարդարանքներ» և «քառասուն մեծ նկարներ» է պատրաստել, որոնք պետք է թատերական պիեսների դեկորացիաներ լինեին։ Ափսոսալով, որ Գովրիկյանը կանգ չի առել վերոհիշյալ նկարների սյուժեների կամ պիեսների բովանդակության վրա, Ա. Բ. Կարինյանը եզրակացնում է, որ նրա տեղեկությունները, այնուամենայնիվ, վկայում են այն մասին, որ Գեռլայում նույնպես հայ կաթոլիկները ժամանակին նպաստել են թատրոնի ու դրամատուրգիայի զարգացմանը։ Իսկ ե՞րբ են թատերական ներկայացումներ կազմակերպվել Գեռլայում և ի՞նչ է եղել դրանց բովանդակությունը. այս հարցերի պատասխանը գտնում ենք Կապրուշյանի ձեռագիր այս աշխատության մեջ։ Որոշակի երևում է, որ Կապրուշյանը, սկսած 1824 թվականից, զանազան առիթներով թատերախաղեր է գրել և իր աշակերտների ուժերով ներկայացումներ կազմակերպել։ Դրանց հաջողության մասին, ինչպես նշում է ինքը աշխատության ծանոթագրությունների բաժնում, արձագանքել է նաև ժամանակի հունգարական մամուլը։

Կապրուշյանին Գեռլայի վերնախավի ներկայացուցիչները բամբասել են նաև թատերական ներկայացումներ կազմակերպելու համար։ Այդ կապակցությամբ ներկա աշխատությունում Կապրուշյանը կարծես պաշտպանում է ինքն իրեն անիրավացի այդ մեղադրանքներից և հայտնում է, որ աշակերտները ներկայացումներին մասնակցելով լուսավորվել են, նոր գիտելիքներ ձեռք բերել, ժամանակը իզուր չեն վատնել և այլն։ Ահա մի փոքր հատված Կապրուշյանի աշխատությունից, նրա թատերական գործունեության վերաբերյալ.

Ութը տարեկան տղայմով
Սուրբ գրքէն մեծ աշխատանքով,
Ջցոփէյի նահապետ խաղցուցի,
Թէադրոնի մէջ ցըցուցի.
Որովը թէ յատուկ քաղքիս
Եւ սիրելի իմ իշխանիս

---

75 Ա. Բ. Կ ա ր ի ն յ ա ն, Ակնարկներ հայ պարբերական մամուլի պատմության, հատոր Ի, Երևան, 1956, էջ 85։

Սէր և մեծ հնազանդութիւն
Ցրցուցի և խոնարհութիւն:
Քաղա՛ք, երբ որ մեծ տիրուհիս
Պսակվեցաւ քոյ թագուհիս,
Անընծավըս նորայ պատվան
Արի նորա մեծ ծառութիւն:
Չի գրելով ի Սուրբ գրքէն
Ըղտուր Դաւիթ մեծ մարգարէն
Սորվէցուցի ըղաըղայրս
Ձայն խաղալու գաշգերտաքըս:
Երփ նոր թագաւոր օրհնըվէց
Ֆերտինանտ յիշխան պսակվեց,
Պատվուն գոմէտիա արի,
Սիրում, Կերյա, սիրով խաղցի:
Երփ ըղկարաւարութեանը
Իրեք հարուր տարեկանը
Տօնք Austria-յին տանը
Տօնեց բովանդակ Արտեալը՝
Կամեցա գրեղ խնդացնելու,
Ով Կերյա, ուրախացնելու:
Որդիքացըդ մէջէն զմէկ մը,
Սորվեցնելով զանգին բան մը,
Լուսապայծառ շատ պատկերով
Զայս տօնը տօնեցի խարձով,
Որ չէ ինձ, համէ օր քեզի
Անիմ խնդում, ո՛վ Կերյացի... (էջ 79ա—81ա)

Կապրուշյանի այս ձեռագիրը արժեքավոր տեղեկություններ է բովանդակում նաև Գեռլայի բնակչության շերտավորման, վերնախավի նեխվածության և չարաշահությունների մասին: Սակայն այս բոլոր հարցերի վեր հանումը առանձին ուսումնասիրության նյութ է:

Ձեռագիրը բաղկացած է 252 թերթից, ունի 11,8×9,3 սմ մեծություն և գրված է շղատառով: Ձեռագրի թիկունքին փակցված է մի պիտակ 125 համարով, որը Գեռլայի ձեռագրատան համարներից պետք է լինի: Կազմի ներսում կա նաև Գեռլայի թանգարանի 2379 համարը, իսկ ձեռագրի տիտղոսաթերթի վրա երևում է թանաքով գրված 19 թվանշանը, որը Զաքարիա Կապրուշյանի աշխատությունների թվահամարն է: Ձեռագիրը Մատենադարանում ստացավ 10053 համարը:

Գեռլայից բերած պատառիկը մի Ավետարանից է, որի մայր ձեռագիրը Գեռլայի շրջանային թանգարանում դժբախտաբար չկարողացանք գտնել: Մի երեսին կա խաչելության նկար, իսկ մյուս երեսին, հավանաբար, Մատթեոս ավետարանչի նկարը: Ըստ երևույթին պետք է նկարազարդված լինի ԺԶ դարում: Նրա մեծությունն է 19,3×13 սմ.: Այս բեկորը գրանցվեց Մատենադարանի հայերեն պատառիկների ժողովածուի 1635 համարի տակ:

Բուխարեստում բնակվող մեր վաղեմի ծանոթ Ստեփան Աբրահամյանը Մատենադարանին մեր միջոցով նվեր ուղարկեց ձայնագրված ձեռագիր շարական, բաղկացած երկու հատորից և շուրջ 2500 էջերից: Նրանք ունեն 12,5×10 սմ.

*մեծությամբ և գրված են շղատառով: Նվիրատուն հայտնեց, որ այդ ձեռագրերը 1956 թ. ստացել է Ռումինիայի Կոնստանցա քաղաքի հոգևոր հովիվ հանգուցյալ Համազասպ Պետիկյանից: Ձեռագրերը Ռումինիա են բերվել կամ Բուլղարիայից և կամ Կ. Պոլսից: Շարականները գրված են հայ նոր ձայնագրության հեղինակ Պապա Համբարձումի ձայնանիշերով: Ապահովաբար գրված են XIX դարի կեսերին: Կազմի վրա կա երկու տեղ դրոշմված 1882 թվականը և լատիներեն տառերով գրված է* M. Achikian, *հավանաբար ձեռագրի նախկին տիրոջ անունը: Այս ձեռագրերը գրանցվեցին Մատենադարանի 10054 և 10055 համարների տակ:*

С. Э. КОЛАНДЖЯН

## ГОРОД ГЕРЛА И ЕГО АРМЯНСКИЕ РУКОПИСИ

**(Резюме)**

Автор статьи, посетивший в декабре 1960 года Герлу (Трансильвания, Румынская Народная Республика), основанную армянами, изучил коллекцию хранящихся здесь армянских рукописей. В начальной части статьи приводятся древнейшие сведения о средневековых армянских поселениях в Трансильвании, а затем излагается краткая история Герлы (Armenopolis, Armenienstadt), построенной армянами в 1700 году по проекту армянского архитектора Алексы. В Герле обосновалась часть армян, в XVII в. переселившаяся в Трансильванию из Молдовы. Вскоре Герла становится одним из цветущих городов Трансильвании.

Во второй части статьи автор говорит о хранящихся в Герле армянских рукописях и их научной ценности. Количество содержащихся здесь рукописей долгое время было неизвестно науке. Ныне в «Армянском зале» областного музея города Герлы хранится около 100 армянских рукописей; к ним следует прибавить еще 20 рукописей, которые автор статьи видел в 1948 году в том же городе. Самой древней рукописью, хранящейся в Герле, является переписанная в 1310 году на Кипре рукопись, содержащая части Нового Завета и Часослова. Здесь хранятся рукописи, созданные в Киликии, Крыму, Молдове, Западной Украине, Польше, Иерусалиме, Ереване, Муше и в самой Герле. Среди них—рукописи исторического, философского, грамматического и юридического содержания.

В конце статьи говорится о четырех рукописях, привезенных автором статьи из Герлы в дар Матенадарану (где они ныне хранятся под №№ 10050—10053), и одном рукописном фрагменте, украшенном миниатюрами (хранится под № 1635). Среди них исключительную ценность представляет рукопись песенника (№ 10050), переписанная в первой четверти XVII века известным поэтом Акопом Тохатеци.

Рукопись за № 10051 представляет собой сборник работ философского и комментаторского характера, переписана в 1440—1446 в г. Ка-

фа писцом Оксентом, который известен как переписчик самой маленькой рукописи, хранящейся в Матенадаране. Рукопись № 10052 представляет собой евангелие, переписанное, по всей вероятности, в XVII веке. Рукопись № 10053 была написана в Герле в 1834—35 годах на местном диалекте, известным армянским деятелем культуры Закарией Габрушяном; она представляет большой интерес для изучающих историю города и является единственным источником по истории созданного Закарией Габрушяном ученического театра.

S. E. KOLANDJIAN

## LA VILLE DE GHERLA ET SES MANUSCRITS ARMENIENS

Lors d'une visite à Gherla (Transylvanie, République populaire de Roumanie) décembre 1960, l'auteur eut l'avantage d'examiner à loisir la collection de manuscrits arméniens conservés dans cette ville.

L'auteur rapporte ici pour commencer d'anciennes données relatives aux agglomérations arméniennes de la Transylvanie au moyen âge, puis retrace brièvement l'histoire de la ville de Gherla (Armenopolis, Armenienstadt) construite en 1700 par les Arméniens et d'après les plans d'un architecte arménien, Alexa. Une partie des Arméniens qui, au XVII$^e$ siècle, émigrèrent de Moldavie en Transylvanie, s'établit à Gherla qui devint bientôt l'une des villes les plus prospères de la région.

La deuxième partie de ce compte-rendu est consacrée aux manuscrits arméniens conservés à Gherla et dont on ne saurait trop dire l'intérêt scientifique. Nous sommes désormais renseignés quant au nombre de ces manuscrits. La „Salle arménienne" du Musée de Gherla possède environ 100 manuscrits arméniens auxquels on est en droit d'ajouter les 20 autres que l'auteur a pu voir en cette même ville, en 1948. Le manuscrit le plus vieux de Gherla a été recopié à Chypre, en 1310, et contient des fragments du Nouveau Testament et du Missel. On peut y voir également des manuscrits de Cilicie, de Crimée, de Moldavie, d'Ukraine occidentale, de Pologne, de Jérusalem, d'Erévan, de Mouch et de Gherla même d'intérêt historique, philosophique, grammatical, juridique, etc.

L'auteur termine en attirant notre attention sur quatre manuscrits rapportés par lui de Gherla et offerts au Maténadaran (où ils sont inscrits sous les n$^{os}$ 10050—10053), ainsi que sur un fragment avec miniatures de manuscrit (n° 1635). Le manuscrit 10050 qui est un recueil de chansons recopiées dans le premier quart du XVII$^e$ siècle par le célèbre poète Hagop Tokhatétsi a une valeur considérable. Le manuscrit 10051 est un recueil de caractère philosophique et exégétique recopié, en 1440—1446, à Caffa par Oksen, connu également comme copiste du plus petit manuscrit du

Maténadaran. Le manuscrit 10052 est un évangile datant probablement du XVII^e^ siècle. Le manuscrit 10053, composé, en 1834—1835, à Gherla, dont il emploie le dialecte, par Zakharia Gabruchian, éminent personnage arménien, présente beaucoup d'intérêt quant à l'histoire de la ville et l'organisation, au début du XIX^e^ siècle, d'un théâtre scolaire. Ce manuscrit est la seule source relative à l'existence de ce théâtre.